# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 8•87



*Հանձնված է արտադրության 1.VI.87 թ.: Ստորագրված է տպագրության 30.VII.87 թ.: ՎՖ 02532: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 66532: Պատվեր՝ 1190: Գինը՝ 15 կոպ.:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 1.VI.1987 г. Подписано к печати 30.VII.1987 г. оФрмат 70×100 1/16. ВФ 02533. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 66532. Заказ 1190. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկը՝ ԳԱԻՋՈՒԻ (ԳԱԻՆԻԿ ՋՈՒԼՈՒՄՅԱՆ. ՖՐԱՆՍԻԱ)

Նախաբան

Լեռը ծեր էր, այնքան ծեր, որ չէր էլ հիշում, թե քանի տարի է ապրում աշխարհի վրա: Նրա շուրջը ամեն ինչ՝ արևն ու աստղերը, մարդիկ ու տարվա եղանակները, ծնվել էին նրանից հետո: Բայց քանի որ դա վաղուց, շատ վաղուց էր եղել, իրենք էլ էին մոռացել այդ մասին: Կամ... ձևացնում էին, թե մոռացել են:

Ա.

Լեռը բարի էր: Ասենք՝ այն ժամանակ դեռ ոչ ոք չգիտեր, թե ինչ է բարությունը, որովհետև ոչ ոք չգիտեր, թե ինչ է չարությունը:

Աշխարհում չարիքը ծնվեց այն պահին, երբ ինչ-ինչ ուժեր հղփացան ու սկսեցին արհամարհել մայր լեռը, այսինքն՝ իրենց սկիզբը:

Բայց լեռը իր բարությամբ ավելի ուժեղ էր, քան աշխարհի բոլոր չար ուժերը իրենց չարությամբ: Դրա համար ոչ մի բանից չէր վախենում: Եվ երբ չար ուժերը ջրհեղեղի տեսքով ողողեցին աշխարհը, նա իր լանջերին պատսպարեց բոլոր ծաղիկներն ու ծառերը, թռչուններին ու կենդանիներին, բարի մարդկանց ու նրանց բարի երազները: Ջրհեղեղի ալիքները կատաղած ծառս էին լինում, խփվում լանջերին, բայց լեռը ավելի ու ավելի վեր՝ դեպի իր գագաթն էր բարձրացնում, անաղարտ պահում այն ամենը, ինչ բարի էր, ինչ պետք էր աշխարհին:

Չար ուժերը սեփական անզորությունից ամքեցին, չքվեցին ու անէացան, իսկ լեռը ասաց ծաղիկներին.

— Գնացեք, զարդարեք հովիտներն ու մարգագետինները, գույներով, բույրերով լցրեք աշխարհը:

Հետո նա ասաց ծառերին.

— Արմատնե՛ր տվեք, պտղակալեք, քաղցրացրեք մարդկանց քիմքերը...

Իսկ մարդուն խաղողի մի որթ տվեց ու ասաց.

— Տար, տնկիր հողի մեջ ու քո քրտինքով ոռոգիր: Սիրիր այն հողը, որի վրա քրտինք թափեցիր:

Մարդ ու գազան, ծառ ու ծաղիկ լցրեցին աշխարհը, ծլեցին, ծաղկեցին, հողի վրա քրտինք թափեցին և տեսան, որ լեռան ասածը բարի է:

Բ.

ն իմաստուն էր: Նա մարդկանց սո-



ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ

# Ծեր լեռան հեքիաթները

(Հեքիաթ, ուր ոչինչ կամ համարյա ոչինչ հնարված չէ)

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

վորեցնում էր խաղաղ ապրել, հասկացնում էր, որ աշխարհն ստեղծված է ինչպես բոլոր կենդանի էակների, այնպես էլ մարդու վայելքի համար, որ նրանք ամենքը մայր բնության առջև հավասար են:

Բայց... քանի որ մարդը չէր հասկանում կենդանիների լեզուն, կարծեց, որ միայն ինքը լեզու ունի, քանի որ չէր լըսում ծաղիկների սրտի տրոփյունը, մը-

տածեց, որ միայն ինքը սիրտ ունի: Եվ իրեն ներշնչելով, որ շրջապատող բնությունից ավելի հզոր, իմաստուն է, որոշեց տիրել նրան: Ջուր էր լեռը հորդորում, որ բոլոր մարդիկ իր համար հավասար են և հավասարապես պիտի վայելեն այս հմայիչ մոլորակը, ջուր էր օրինակ բերում երկրի հնաբնակներին՝ կենդանիներին, բույսերին, թռչուններին. մարդիկ այլևս չէին լսում նրան: Նրանք հոծ, անանցանելի գծերով փոքրիկ մասերի բաժանեցին առանց այն էլ փոքր երկրագունդը և սահմանի վրա զինված պահապաններ կարգեցին: Նրանցից ամեն մեկն արդեն ուներ իր լինը, իր լեռը, իր անտառն ու անգամ իր շնչելու օդը: Հետո, քանի որ իրենցը իրենց քիչ թվաց, սկսեցին խլխլել միմյանց ունեցվածքը: Մեկը մյուսից ետ չէր ուզում մնալ: Զորքերը հետզհետե բազմամարդ, զենքերը ահավոր էին դառնում: Շուտով, աշխարհում ինչքան մարդ կար, զինվոր դարձավ: Իրենց կարիքները հոգալու համար նրանք հարձակվում էին միմյանց վրա, խլում միմյանց ունեցվածքը: Ով ավելի դաժան էր, ով կարողանում էր ավելի շատ հարստություն կուտակել, սկսում էր երևակայել իրեն, կարծել, որ եթե ունի ուժ, ուրեմն՝ ամեն ինչ ունի:

Մի անգամ, ահա, այդպիսի մեկը, որին բոլորը անթիվ գանձերի ու անհաշիվ զորքի համար արքա էին կոչում, հարբեց կարմիր գինով և, քանի որ շրջապատում վաղուց ամեն ինչ հպատակեցրել, նվաճել էր, որոշեց նվաճել նաև լեռը: Նա ձին չափ գցեց, սուրաց դեպի անմատչելի գագաթը, բայց վերից հողմեր փչեցին, ետ շրջեցին նժույգին: Ասենք, նժույգն ի՞նչ մեղք ուներ, հեծյալն էր անմիտ: Նա իր կաշեհյուս մտրակով լախտահարեց ձիու դեմքը, հրամայեց վեր, միայն վեր սլանալ, այնտեղ, ուր անբիծ ձյուներն էին, ուր մարդու ոտք դեռ չէր դիպել: Գինով հեծյալի անմտությունը համբերությունից հանեց լեռանը: Հողը պատռվեց, անդնդախոր վիհեր բացվեցին ու իրենց մեջ առան նժույգն էլ, հեծյալին էլ: Հեռատես լեռը այդքանով չգոհացավ. երկաթե շղթաներով նրանց կապեց ժայռերին, որպեսզի մեծամտությունն ու ամբարտավանությունը լույս աշխարհ չգան, ոչ մի տեղ չթագավորեն: Ահա, այդ պահին էլ հպատակները հասկացան, որ իրենք արքային մեծարում էին վախից: Այդ պահից սկսած նրանք ամեն երեկո մուրճը խփում են սալին, որպեսզի չարիքը էլ երբեք աշխարհ չգա, ոչ մի տեղ չթագավորի:

Գ.

Լեռը մենակ էր մնացել: Նրա փեշերին ծվարել էր միայն մի փոքրիկ ազգ, որը, հավատարիմ իր ծագմանը, ապրում էր հին պատգամներով: Թշնամին սապատակ էր սփռում ողջ երկրում, մորթոտում, պղծում, իսկ ողջ մնացածները նախնական խաղաղությամբ ու հավատով ցորեն էին ցանում, խաղողի որթ տնկում, աստվածներ, աղավնիներ քանդակում: Ու չէին զգում, թե ինչպես մոմի նման հալվում են, սպառվում:

Բայց օրհասական պահերին միշտ էլ ծնվում է այնպիսի մեկը, որին հետո ժողովուրդը փրկիչ է կոչում: Ահա ծնվեց այդ մեկը և փրկեց իր ժողովրդին: Նա նախ ուզում էր աշխարհի ամենազորեղ զենքերը հնարել, բայց հասկացավ, որ այդքան շատ ոսոխի հնարավոր չէ զենքով ետ մղել, ապա մտածեց երկիրը անհաղթահարելի պարիսպով պատել, բայց ո՞ր հաստաբեստ բերդը կդիմանար թշնամական խաժամուժին... Ու նա իր անքուն, մտածմունքներից մշուշված հայացքը հառեց մայր լեռանը: Լեռը կարծես դրան էր սպասում: Խավարի մեջ ճերմակ գագաթը շառագունեց ծիածանի ցոլքերով ու մեկը մյուսի ետևից շողշողացին երեսունվեց հրաշք-գրեր, աղավնիների պես թևածեցին երկնքում: Մարդը մի պահ կարկամել էր այդ տեսիլքի առջև, հետո սթափվեց ու չկորցրեց պահը: Նա իր եղեգը թաթախեց այդ ցոլքերի մեջ, մագաղաթի վրա արտանկարեց գրերը, տվեց ժողովրդին:

Հետո դարեր անցան, ինչպես միշտ են անցնում: Այն բոլոր ժողովուրդները, որոնք իրենց զենք ու զորքով ամենազոր, հավերժական էին թվում, կորան-գնացին, իսկ այն ժողովուրդը, որին լեռը գիր էր տվել, մնաց:

Որովհետև կարողացավ գրել իր պատմությունը:

Վերջաբան

Գրեցի այս բառն ու մնացի շվարած: Ախր նման հեքիաթները վերջ չունեն, որովհետև գրում է կյանքը, գրում է անընդհատ: Իսկ լեռը ուղղակի պատմում է մեզ, որ չմոռանանք, թե ով ենք, որտեղից ենք եկել և դեպի ո՛ւր պիտի գնանք:



ԷԴԳԱՐ ՊՈ

# Գորտը

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

Կար-չկար մի թագավոր կար, նա շատ էր սիրում կատակներ ու զվարճություն, և արդյոք դրանից չէ՞ր, որ նրա յոթ մինիստրներն էլ հայտնի կատակախոսներ էին: Եվ իրենց թագավորի նման նրանք էլ էին գեր, ծանրամարմին, ճարպի մեջ կորած: Թագավորը պահում էր նաև պալատական մի «հիմար», ճիշտն ասած՝ նա հիմարության կարիք ուներ՝ մեղմելու ոչ միայն իր յոթ մինիստրների հոգնեցուցիչ իմաստակությունը, այլև՝ սեփականը:

Բայց նրա «հիմարը», այսինքն՝ ծաղրածուն, թագավորի համար շատ թանկ արժեր, քանի որ և՛ թզուկ էր, և՛ հաշմանդամ: Նրա՛ն անվանում էին Գորտ, հենց այսպես: Արդյո՞ք դա նրա կնքանունն էր... Ավելի ճիշտն այն էր, որ այդ անունը տրված էր նրան յոթ մինիստրների ընդհանուր համաձայնությամբ, քանի որ թզուկը չէր կարողանում մարդու նման քայլել, շարժվում էր փոքրիկ ցատկերով, բայց դա ոչ ցատկել էր, ոչ էլ սողալ, մի բան, որ շատ էր զվարճացնում թագավորին և մխիթարում, քանի որ պալատում նա իրեն համարում էր գեղեցկության տիպար, չնայած հաստ փորին և ուռած դեմքին:

Թեև Գորտը քայլում էր մեծ դժվարությամբ, սակայն ձեռքերի անասելի ուժը, որ բնությունը պարգևել էր նրան, փոխարինում էր ոտքերի թուլությանը և կատարում ապշեցուցիչ արարքներ՝ հարկ եղած դեպքում կառչել ճյուղից կամ պարանից, կամ էլ մագլցել մի բարձր տեղ:

Հայտնի չէր, թե Գորտը որտեղացի էր: Նրան և մի ջահել աղջկա, նույնպես թզուկ, ինչպիսին Գորտն էր, բայց զարմանալի համաչափ կազմվածքով և աքանչելի պարուհի, խլել-բերել էին երկրից, նրանց հարազատներից, և նվիրել թագավորին: Եվ զարմանալի չէր, որ նման հանգամանքներում երկու փոքրիկ գերիները մտերմանային: Եվ ճիշտ որ, մի կարճ ժամանակից նրանք դարձան հավատարիմ բարեկամներ: Գորտը, չնայած իր զավեշտական արարքներին, պալատում այնքան էլ ճանաչված չէր և Տրիպետտային քիչ էր կարողանում օգնել, բայց աղջիկը, շնորհիվ իր գեղեցկության՝ մեծ ազդեցություն ուներ, և երբ պետք էր, ոչինչ չէր խնայում իր բարեկամին օգնելու համար:

Մի անգամ թագավորը որոշեց պալատում դիմակահանդես կազմակերպել, նման դեպքերում Գորտը և Տրիպետտան

ստիպված էին լինում ցուցադրել իրենց շնորհքը. Գորտը, օրինակ, կարողանում էր դահլիճը զարդարել, նորանոր դիմակներ ու հագուստներ հնարել:

Մոտենում էր դիմակահանդեսի օրը: Ծքեղ դահլիճը Տրիպետտայի հսկողությամբ զարդարել էին ամեն տեսակ խորհրդանշաններով: Ամբողջ պալատը սըրտատրոփ սպասում էր:

Իրենց դիմակների և հագուստների համար հոգացել էին բոլոր պալատականները՝ բացի թագավորից և իր յոթ մինիստրներից: Հաստլիկ ու տձև լինելու պատճառով նրանք չէին կարողանում համապատասխան հագուստներ ու դիմակներ հնարել: Իսկ ժամանակն անցնում էր, և նրանք ստիպված եղան կանչել Գորտին ու Տրիպետտային:

Երբ փոքրիկ բարեկամները ներս մըտան, թագավորն ու մինիստրները նըստած էին սեղանի շուրջը: Թագավորի դեմքը մռայլ էր և խիստ: Նա գիտեր, որ Գորտը գինի չի սիրում, քանի որ խմիչքը թշվառ հաշմանդամին հասցնում էր գրեթե խելացնորության: Բայց թագավորը սիրում էր հեգնել ու ծաղրել. նա ասաց.

— Եկ այստեղ, Գորտիկ, խմիր այս մի թաս գինին քո հեռավոր հարազատների կենացը, (Գորտը հառաչեց) և մեզ օգնիր քո հնարագիտությամբ: Մեզ պետք են դիմակահանդեսի հագուստներ, լըսո՞ւմ ես, հնարիր նոր բաներ, զարմանալի՛, զվարճալի՛: Դե՛, խմիր, գինին միտքդ կպարզի:

Գորտը ուզեց կատակով պատասխանել թագավորի սիրալիր խոսքերին, բայց դժվար էր: Այդ օրը թշվառ էակի ծննդյան օրն էր, և թագավորի հրամանը՝ խմել հեռավոր հարազատների կենացը, նրա սիրտը շարժեց, ու երբ նա գլուխ տալով, թագավորի ձեռքից վերցրեց գինու թասը, ծանր արցունքներ կաթեցին թասի մեջ:

— Հա՛-հա՛-հա՛,— բրբջաց թագավորը, երբ թզուկը զզվանքով թասը դատարկեց:— Ահա թե ինչ է մի թաս ընտիր գինին, իսկույն աչքերը փայլեցին:

Խեղճ թզուկի աչքերից կայծեր դուրս թռան, գինու ազդեցությունը հեշտությամբ բորբոքվող նրա ուղեղի համար ուժեղ էր և ակնթարթային: Նա դողացող ձեռքով թասը դրեց սեղանին, իսկ հայացքը շրջեց դեպի ներկաները: Թագավորի կատակը, ըստ երևույթին, ներկաները համարեցին չափազանց զվարճալի:

— Իսկ հիմա գործի անցիր, Գորտ,— ասաց առաջին մինիստրը:

— Այո՛,— հաստատեց թագավորը,— օգնի՛ր, Գորտ, մեզ հարկավոր են նոր, առանձնահատուկ հագուստներ: Մեզ ամենքիս պակասում է որոշակի բնավորություն, հա-հա-հա-հա,— և քանի որ թագավորը դա համարեց սրամիտ կատակ, ապա յոթ մինիստրները նույնպես ծիծաղեցին:

— Ես կաշխատեմ ինչ-որ բան հնարել, մի նոր բան,— պատասխանեց թզուկը գրեթե անգիտակից վիճակում:

— Կաշխատե՞ս,— գոչեց թագավորը զայրույթով,— դա ի՞նչ է նշանակում: Ա՛, հասկացա: Երևի դժգոհ ես, որ քիչ խմեցիր: Ահա՛, էլի խմիր,— և նա նորից թասը լցրեց և մեկնեց թզուկին, որ հազիվ շնչելով նայում էր նրան:

— Խմի՛ր, ասում եմ քեզ,— գոչեց հըրեշը,— թե չէ, երդվում եմ բոլոր դևերի անունով...

Թզուկը դանդաղում էր, թագավորի դեմքը կարմրել էր զայրույթից: Գունատ Տրիպետտան մոտեցավ թագավորի գահին և, ծնկի գալով, աղաչեց խնայել իր բարեկամին:

Մի պահ թագավորը ապշահար նայում էր աղջկան: Նա շփոթվեց, չգիտեր ինչպես արտահայտել իր զայրույթը՝ այդպիսի հանդգնության համար: Նա ամբողջ ուժով աղջկան հրեց և թասի գինին շփփացրեց նրա դեմքին:

Խեղճ աղջիկը մի կերպ տեղից ելավ և, վախից շնչասպառ, գնաց իր տեղը:

Տիրեց ահավոր լռություն: Եվ հանկարծ այդ լռության մեջ՝ մի տարօրինակ կրճտոց, որ ասես լսվում էր սենյակի բոլոր անկյուններից:

— Այդ ի՞նչ ձայն է, ինչպե՛ս ես համարձակվում ատամներդ կրճտացնել,— դիմեց մոլեգնած թագավորը թզուկին:

Պետք էր կարծել, որ թզուկի զինվորությունը բավականին անցել էր. նա հանդարտ և վստահ նայեց թագավորին և գոչեց.

— Ե՞ս: Այդ մի՞թե ես եմ:

— Ձայնը կարծես թե դրսից է գալիս,— ասաց մինիստրներից մեկը,— գուցե դրսում կախված վանդակի թութակն է կտուցը քսում ձողին:

— Ճի՛շտ է,— պատասխանեց թագավորը՝ մի փոքր հանդարտված,— բայց ես երդվում եմ իմ ասպետական պատվով, որ այդ ծույլ անբանն էր կրճտացնում:

Թզուկը ծիծաղեց, երևացին նրա ու-ժեղ, խոշոր ատամները, և նա մի թաս գինի էլ խմեց՝ առանց նկատելի որևէ հետևանքի, և սկսեց խոսել դիմակահան-դեսի մասին:.

— Հենց հիմա,— ասաց նա, դիմելով թագավորին,— հենց նոր, երբ ձերդ մե-ծությունը խփեց աղջկան և գինին լցրեց նրա դեմքին, հենց նոր, երբ թուրական այդպես տարօրինակ կրճտացրեց կտու-ցով, ես հիշեցի մի սքանչելի խաղ, որ շատ էին սիրում իմ հայրենիքում: Բայց դրա համար կպահանջվի ութ հոգի...

— Ահա մե՛նք,— գոչեց թագավորը, հրճվելով իր սրամտությամբ,— հենց ութ հոգի ենք: Ես և իմ յոթ մինիստրները: Ասա ինձ, դա ի՞նչ խաղ է:

— Մենք այդ խաղը կանվանենք «Յոթ շղթայված օրանգուտանգ», և եթե խաղը հաջող ստացվի, դա կլինի հրաշալի տե-սարան:

— Մենք վատ չենք խաղա,— ասաց թագավորը՝ տեղում ձգվելով:

— Խաղի ամենամեծ արժանիքն այն է,— շարունակեց Գորտը,— որ այն վա-խեցնում է կանանց:

— Հրաշալի է,— գոչեցին մինիստրնե-րը միաձայն:

— Ես ձեզ կզգեստավորեմ այնպես, որ բոլորը կարծեն, թե դուք իսկական մարդանման կապիկներ եք և կվախենան ու կզարմանան,— շարունակեց թզուկը:

— Օ՛, սքանչելի է,— գոչեց թագավո-րը:— Գորտի՛կ, ես քեզ կպարգևատրեմ արքայավայել:

— Իսկ ձեր շղթաների շառաչյունից աղմուկն ու իրարանցումը ավելի կմե-ծանա: Մարդիկ կասեն, որ դուք բոլորդ փախել եք ձեր հսկիչներից: Ձերդ մե-ծություն, պատկերացնո՞ւմ եք ինչպիսի տպավորություն կթողնի յոթ հսկա կա-պիկների հայտնվելը, նրանք կատաղի ճիչերով կհարձակվեն դիմակահանդեսի զգեստներ ու դիմակներ հագած մարդ-կանց վրա: Ինչպիսի՜ տեսարան:

— Դիմակահանդեսը հենց այդպես էլ տեղի կունենա,— ասաց թագավորը և հրամայեց գործի անցնել:

Թագավորը և մինիստրները նախ և ա-ռաջ հագան նեղ հագուստներ, որոնց վրա քսեցին ձյութ, իսկ ձյութի վրա հաստ շերտով կպցրին կանեփ: Հետո բերեցին մի երկար շղթա, որը նախ փաթաթեցին թագավորի մեջքին և ծայրը ամրացրին, ապա շղթան հերթով փաթաթեցին և ամ-րացրին յոթ մինիստրների մեջքին: Նր-անք կանգնեցին միմյանցից հեռու, որ-քան որ թույլ էր տալիս շղթան, և շրջան կազմեցին:

Դահլիճի առաստաղից կախված հսկա-յական ջահը չէր վառվում, քանի որ թափվող մոմի կաթիլները կկեղտոտեին հյուրերի զգեստները, ջահը սովորաբար բարձրացնում և իջեցնում էին ճախարա-կի օգնությամբ, որը գտնվում էր բակում: Բազմաթիվ արձանասյուներից կախված մոմակալպատերների լույսերը ողողել էին դահլիճը:

Ութ օրանգուտանգներ համբերությամբ սպասում էին կեսգիշերին, մինչև որ հյուրերը հավաքվեն: Ու երբ լռեց ժամա-ցույցի զարկերի ձայնը, հյուրերը միան-գամից դահլիճ լցվեցին, բայց դիպչելով կապիկների շղթային, սկսեցին իրար ե-տևից գլորվել:

Սկսվեց սոսկալի իրարանցում, որը թագավորին մեծագույն հրճվանք պատ-ճառեց: Հյուրերի մի մասը ծպտյալներին համարում էր եթե ոչ օրանգուտանգներ, ապա, համենայնդեպս, ինչ-որ անծանոթ գազաններ: Շատ կանայք ուշագնաց ե-ղան, և եթե թագավորը հրամայած չլի-ներ դիմակահանդես գալ առանց զենքի, ապա դահլիճում շրջող զարհուրելի ութ-նյակի վերջը եկել էր:

Բոլորը վազեցին դեպի ելքի դռները, բայց թագավորը նախօրոք հրամայել էր փակել դրանք, իսկ թզուկն առաջարկել էր բանալիները հանձնել իրեն:

Երբ իրարանցումը հասավ իր գագաթ-նակետին և հյուրերը մտածում էին ի-րենց փրկության մասին, առաստաղից կախված ջահը սկսեց կամաց-կամաց իջ-նել ու երբ ընդամենը երեք ոտնաչափ բարձրության վրա էր, թզուկը զարհուրե-լի կապիկների շղթայի ծայրը գցեց ջահի կեռիկին: Նույն րոպեին մի ինչ-որ ան-տեսանելի ուժ ձգեց ջահի շղթան դեպի վեր և նրանց հետ էլ՝ օրանգուտանգնե-րին, որ կախվել էին օդի մեջ՝ կողք-կող-քի, երես-երեսի:

Հյուրերը մի փոքր ուշքի էին եկել և տեսնելով, որ դա լավ մտածված թատե-րախաղ է, սկսեցին քրքջալ:

—Ովքե՞ր են դրանք, ովքե՞ր են,—սուր ձայնով ճչաց թզուկը,— թողեք մի լավ նայեմ, որ ձեզ ասեմ, թե ովքեր են:

Նա մարդկանց գլուխների վրայով հա-սավ պատին, արձանասյան վրայից խլ-եց լապտերը, հետ վերադարձավ, ճարպ-կությամբ թռավ թագավորի գլխի վրա, մագլցեց շղթայի վրայով և ձեռքի լապ-

տերով լուսավորեց օրանգուտանգների դեմքերը:

— Հիմա կիմանամ, հիմա կիմանամ,— նա սոսկալի սուլեց, և շղթան թռավ վեր, հավասարվեց առաստաղին՝ իր հետ տանելով սարսափից օրորվող հսկա կապիկներին:

Հյուրերն այնպես էին ապշել այս տեսարանից, որ մի պահ քար լռություն տիրեց: Լռությունը խզվում էր միայն սուր մի կրճտոցով, որ պարահանդեսից առաջ ապշեցրել էր թագավորին ու մինիստրներին, երբ թագավորը գինին շրփփացրել էր Տրիպետտայի երեսին: Բայց հիմա այլևս հարկ չկար հարցնելու, թե որտեղից էր գալիս կրճտոցի ձայնը: Թըզուկն էր, որ, փրփուրը բերանին, կափկափում ու կրճտացնում էր իր սարսափելի ատամները, կատաղի հայացքը հառած դեպի վեր նայող թագավորին ու նրա յոթ մինիստրներին:

— Հա՛-հա՛-հա՛,— քրքջաց մոլեգնած թզուկը,— ես սկսում եմ ճանաչել այս մարդկանց:

Ապա կարծես ուզենալով մի լավ նայել թագավորին, լապտերը մոտեցրեց նրա կանեփի հագուստին, որն անմիջապես բռնկվեց վառ բոցով: Չէր անցել նույնիսկ մի րոպե, երբ սոսկալի ութնյակը բոցերի մեջ էր: Հյուրերը, սարսափած, գոռում-գոչում էին, բայց անզոր էին օգնելու:

— Հիմա լավ տեսնում եմ, թե սրանք ովքեր են, սրանք ծպտված են: Սա մեծ թագավորն է: Թագավո՜րը: Նա առանց ամաչելու հրել է անպաշտպան աղջկան և գինին լցրել երեսին: Սրանք էլ թագավորի յոթ խորհրդատուներն են, որ գովել են նրա ստոր արարքը: Իսկ ես Գորտն եմ, ծաղրածուն, և սա իմ վերջին կատակն է...

Կանեփը և ձյութը շուտ են բռնկվում, ութ մարմինները կախված էին շղթայից՝ սևացած, գարշահոտ զանգվածներ:

Թզուկն իր ձեռքի լապտերը շպրտեց նրանց վրա, մագլցեց շղթայի վրայով դեպի վեր և անհետացավ առաստաղի պատուհանից:

Ասում են՝ Տրիպետտան այդ ժամանակ տանիքում էր և օգնում էր իր վրիժառու բարեկամին, և որ նրանք միասին փախել են իրենց երկիրը, քանի որ մինչև օրս նրանց ոչ ոք չի տեսել:

Փոխադրեց ՕԼԳԱ ՍԱՆԱՀՅԱՆԸ

ՌԱԶՄԻԿ ԴԱՎՈՅԱՆ

# Գտնող-կորցնողին

Թող լույս չլիներ:
Թող անձրևաբեր անիվը տնքար՝
վերից վար ամբողջ ջուր հոլովելով,
թող կեչիները չշողշողային՝
լույսի, երկնքի մեջ օրորվելով...
բայց, արի ու տես, օրը ցերեկով,
կապույտ աստըծո պայծառ լույսի տակ,
մեկը ինչ-որ մի դրամ կորցրեց
և այդ պատճառով դարձավ խեղկատակ.—
և այդ պատճառով
կորցրեց քունն ու գլուխը լրիվ.—
նա, ով գտել էր դրամը կորած,
նա էլ կորցրեց և՛ գլուխ, և՛ քուն,
ուրախությունից չէին հավաքվում
մտքերը ցրիվ,
ճակատագրին թաքուն քծնելով,
դիֆերամբներ էր ջերմորեն երգում:

Նրանք իրար հետ նստած միասին՝
անգլուխ, անքուն,
զրուցում էին ճակատագրի խաղերի մասին,
երբ մի երրորդը եկավ-միացավ՝
լրիվ անգլուխ և լրիվ անքուն.—
կորցըրել էր սեր
և գտել էր ցավ՝
դատարկ էր կյանքը,
և աշխարհը՝ սին...

Էլ ինչի՞ն էր պետք.
նա ողջ դրամն իր տվեց գտնողին,



կորցնողին թվաց,
թե ինքն էր, ավա՜ղ, նորից կորցրրեց,
ամբողջ հասակով նա փռվեց հողին,
անիծում էր, որ հողն իրեն ծնեց:

Եվ հողը նրա ականջին ասաց՝
— Գտի՛ր գլուխդ, դրամն ի՞նչ է, որ...
դրամն ի՞նչ է, որ... գլո՛ւխդ գտիր.—
հրաշք էր, սակայն
բացվեց ականջը, և հողին անսաց,
և անսաց բոլոր բառերն անխտիր:

Վեր կացավ տեղից, բռում՝ մի բուռ հող,
բռում՝ մի բուռ հող, տեղից վեր կացավ
և, լսեք՝ ասաց ձայնով իր դողդող,
հողն ի՞նչ է ասում, լսե՛ք՝ բարկացավ...

Բայց քանի նրանք անգլուխ էին,
նրանց թվաց, թե խելագարվել է
մի հարազատ մարդ,
ծանոթ մի մոտիկ.—
և հողը ձեռքին դեռ գնում է նա,
անգլուխ մարդկանց միջով գնում է՝
գլուխն իր տեղում, ու ոտաբոբիկ...

●●●

Թ՛ե հուշերս կրկին թերթեմ՝
օրերի մեջ իմ մթամած,
սուրբ Հովհաննեսս սարն է իմ դեմ՝
մեր սուրբ Սարգիս սարի դիմաց:

Եվ երկուսի մեջտեղը՝ Դու,
ոտից գլուխ սներ հագած,
տեսքով՝ հզոր խանում-խաթուն,
բայց սիրտ ու շուրթդ պապակած:

Դու բույն էիր արծիվների,
բայց բոլորը ելան-թռան,
ես քո վերջին խաս ծիլն էի,
ես էլ թռա բերնեբերան:

Կարծես ոչինչ չեմ հասկանում,
կարծես անգետ մանուկ եմ ես.—
ունեմ անուն և ազգանուն,
ունեմ հասցե և բախտ մի կես:

Մտածում եմ ճիշտ այն ձևով,
ինչ որ անգետը մտածի՝
— Մա՛յր իմ, ինքդ հենց քո ձեռքով
քո սրտի տունը քանդեցիր.—

Թե որ սիրտդ պահպանեիր,
դեռ կապրեիր, մայր իմ, էլի.—
չգիտե՞մ, որ չի պահպանվում
բնավեր սիրտը մայրերի...




ԽԱՉԻԿ
ՀՐԱՉՅԱՆ

(կատակ)

Նկարները
ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Աշխատասենյակ: Մեծ գրասեղան: Գրադարակներ, գրքեր: Գրասեղանի մոտ հարմարավետ բազկաթոռին նստել է հայրը: Նա թեքվել է առաջ, գլուխն առել ափերի մեջ և, արմունկները հենած սեղանին, աչքերը հառել է անորոշությանը: Մտածում է:

Կամացուկ բացվում է աշխատասենյակի դուռը, անաղմուկ հայտնվում է Տղան: Նա, աչքերը խոնարհած, ցուցամատը շուրթերին, մնում է կանգնած դռան մոտ:

Երկարատև լռություն: Տղան ոտքից ոտք է փոխվում, ապա կամացուկ հազում է:

**ՀԱՅՐ**—(Գլուխ բարձրացնելով): Ա-ա՜, այդ դո՞ւ ես:

**ՏՂԱ**— Հհը...

**ՀԱՅՐ**— Ի՞նչ կա:

**ՏՂԱ**— Ի՞նչ պիտի:

**ՀԱՅՐ**— Էլի օյին ես սարքե՞լ:

**ՏՂԱ**— Չէ:

**ՀԱՅՐ**— Աչքերիցդ երևում է, որ սարքել ես:

**ՏՂԱ**— Չէ, ազնիվ խոսք:

**ՀԱՅՐ**— Հիմա էլ երդվում ես ազնիվ խոսքով: Դու դեռ այն տարիքին չես, որ հասկանաս ազնիվ խոսքի արժեքը... Ուրեմն, անկարգություն չե՞ս արել:

**ՏՂԱ**— Չէ, հայրիկ:

**ՀԱՅՐ**— Հապա ինչո՞ւ ես խանգարում ինձ: Քանի՞ անգամ եմ ասել, որ երբ աշխատում եմ, աչքիս չերևաս: Չեմ կարող կենտրոնանալ:

**ՏՂԱ**— Գիտեմ:

**ՀԱՅՐ**— Գիրք եմ գրում, հասկանո՞ւմ ես:

**ՏՂԱ**— Հասկանում եմ: Դու միշտ գիրք ես գրում:



ՀԱՅՐ— Հասկանո՛ւմ եմ... Բայց միշտ էլ ներս ես ընկնում ու խանգարում: Մի՞թե խելոք տղան այդպես է վարվում:

ՏՂԱ— Բան պիտի խնդրեմ...

ՀԱՅՐ— Դե լավ, ասա տեսնենք, միայն թե շուտ, ժամանակ չունեմ:

ՏՂԱ— (Մոտենում է գրասեղանին): Հայրիկ, դաստիարակիր ինձ:

ՀԱՅՐ— Ի-ի՞նչ...

ՏՂԱ— Դաստիարակիր:

ՀԱՅՐ— Այդ որտեղի՞ց հնարեցիր:

ՏՂԱ— Չեմ հնարում: Ընկեր Սարգըսյանն է ասում:

ՀԱՅՐ— Ո՞վ է այդ ընկեր Սարգսյանը:

ՏՂԱ—(Թերահավատ ժպիտով): Իբրև թե չգիտես...

ՀԱՅՐ— Իհարկե, չգիտեմ:

ՏՂԱ— (Զարմանքով): Չգիտես ով է ընկեր Սարգսյա՞նը:

ՀԱՅՐ— Իսկ ի՞նչ կա որ: Ով է նա՝ Մակարենկո՞ն է, թե՞ Պեստալոցցին...

ՏՂԱ— Ընկեր Սարգսյանը մեր դասղեկն է, ընկեր Էմման:

ՀԱՅՐ— (Փոքր-ինչ շփոթված): Ա-ա՜, այդպես էլ կասեիր՝ ընկեր Էմման, ձեր դասղեկը: Գիտեմ անշուշտ: Ի՞նչ է ուզում ընկեր Էմման:

ՏՂԱ— (Շփոթված): Մի քիչ զբաղվիր ինձանով... Դաստիարակիր: Ընկեր Էմման ասում է՝ ծնողները պետք է զբաղվեն իրենց երեխաների դաստիարակությամբ: Դու ծնող ես, չէ՞:

ՀԱՅՐ— Երևի:

ՏՂԱ— Բոլոր ծնողներն էլ զբաղվում են իրենց երեխաների դաստիարակությամբ: Հրեն Հարութի հայրիկը... եկել էր դպրոց: Էն Հարութի, է՛, որ Էդիկի ու Արայի հոլերը տակով էր արել: Ընկեր Էմման խոսեց Հարութի հոր հետ, ու հետո տուն գնալիս նա ամբողջ ճամփին դաստիարակում էր Հարութին: Մի անգամ էլ ականջը քաշեց, իսկ Հարութը տզզաց: Ինքս տեսա: Աշոտի մայրիկն էլ եկավ: Այդ Աշոտը սատկած մուկ էր բերել դպրոց ու բոլորին վախեցնում էր, իսկ դասի ժամանակ աղջիկներն էնպես ճըղճըղացին, որ էլ չասած, իսկ ընկեր Էմման Աշոտին դուրս արեց դասարանից, իսկ Աշոտի մայրիկը ներողություն խնդրեց ու լաց եղավ: Մեղք էր:

ՀԱՅՐ— Այդ բոլորը լավ...

ՏՂԱ— Ի՞նչն է լավ: Սատկած մուկը դրել էր Անահիտի պայուսակի մեջ:

ՀԱՅՐ— Այդ, իհարկե, վատ է, Աշոտն այդպիսի բան չպիտի աներ: Չէ՞ որ մայ-

րը մեղք է: Տեսնո՞ւմ ես, դու էլ ես խղճում մորը:

ՏՂԱ— Որ էդպես է՝ դաստիարակիր ինձ: Ոչ մի անգամ չես դաստիարակել:

ՀԱՅՐ— (Մեկուսի): Մոր խոսքերն են... Լսիր, Արմիկ, ինչպե՞ս կարող ես այդպիսի անարդար բաներ ասել: Ծընված օրից ես զբաղված եմ քո դաստիարակությամբ:

ՏՂԱ— Չեմ հիշում:

ՀԱՅՐ— Չի՛ հիշում... Չես էլ կարող հիշել: Հարցրու մայրիկին, նա ամեն ինչ հիշում է: Եվ, վերջապես, մի՞թե կասկածում ես իմ խոսքին: (Վեր է կենում տեղից և սկսում ետ ու առաջ քայլել: Կանգ է առնում Տղայի մոտ, ուշադիր զննում նրան): Դե ասա, կասկածո՞ւմ ես:

ՏՂԱ— (Խուսափողաբար): Այ, հիմի զբաղված հո չես, կարող ես մի քիչ դաստիարակել: Ճիշտ չի՞: Հետո էլի աշխատիր: (Սպասողական նստում է բազմոցի ծայրին):

ՀԱՅՐ— (Անկանջ դնելով): Դռան զանգը չէ՞ր...

ՏՂԱ—(Նույնպես ականջ դնելով): Չէ:

ՀԱՅՐ— Ուրեմն, ինձ թվաց: Ի՞նչ պիտի ասեի...Քո տարիքի երեխաների դաստիարակության յոթանասուն-ութսուն տոկոսը ընկնում է մայրերի վրա:

ՏՂԱ— Բա քսա՞ն տոկոսը:

ՀԱՅՐ— Ի՞նչ քսան տոկոս:

ՏՂԱ— Էն, որ մնաց հարյուրից:

ՀԱՅՐ— Դե, այդ նշանակություն չունի: Դաստիարակությունը հիմնականում մայրիկի գործն է:

ՏՂԱ— Մայրիկն աշխատում է:

ՀԱՅՐ— Հիմա բոլորն էլ աշխատում են: Երբ դու քիչ առաջ ներս եկար, ես ի՞նչ էի անում:

ՏՂԱ— Դու գլուխդ առել էիր ափերիդ մեջ ու նայում էիր դիմացի պատին:

ՀԱՅՐ— Ճիշտ է: Ես մտածում էի, իսկ մտածելը նույնպես աշխատանք է: Առանց մտածելու չի կարելի գիրք գրել:

ՏՂԱ— (Վերադառնալով բուն թեմային): Ես արդեն գիտեմ՝ ինչու չես ուզում դաստիարակել:

ՀԱՅՐ— Ինչո՞ւ:

ՏՂԱ— Չես կարողանում:

ՀԱՅՐ— (Մեկուսի): Նորից մոր խոսքերը... Անմիտ բաներ ես դուրս տալիս:

ՏՂԱ— (Համառորեն): Չես կարողանում:

ՀԱՅՐ— (Համբերությունից դուրս գալով): Ձայնդ կտրի՛ր, հիմար: Թող հայտնի լինի քեզ, որ ես ժամանակին կարդացել եմ Մակարենկոյի «Մանկավարժական պոեմը», ծանոթացել եմ Պեստալոցցիի և մյուս մանկավարժների գործերին: Էլ չեմ ասում, որ ինքս էլ մի շարք գրքեր եմ գրել, գիտես... Ահա, ի դեպ: (Վերցնում է սեղանի վրայից մի գրքույկ): «Երեխայի սխալները ծնողների սխալներն են»: Հեղինակը ո՞վ է:

ՏՂԱ— (Առանց գրքին նայելու, բարձրը): Գուրգեն Բարդուղյանը:

ՀԱՅՐ— Ճիշտ է: Իսկ ո՞վ է Գուրգեն Բարդուղյանը:

ՏՂԱ— Իմ հայրիկը:

ՀԱՅՐ— Տեսնո՞ւմ ես: Ուրիշները հայրիկիդ գրածներով սովորում են, թե ինչպես պետք է դաստիարակել երեխաներին, իսկ դու ասում ես դաստիարակել չգիտեմ: Խելո՛ք, ձեր ընկեր Էմմային էլ, մյուս ուսուցիչներին էլ ես եմ սովորեցրել դաստիարակության արվեստը:

ՏՂԱ— (Ավելի հարմար տեղավորվելով բազմոցին ու պայծառանալով): Որ էդպես է, սկսիր.

ՀԱՅՐ— Ի՞նչը սկսեմ:

ՏՂԱ— Դաստիարակել:

ՀԱՅՐ (Հուսահատորեն): Ախր հասկացիր, Արմիկ, դա հո երես լվանալ չի կամ քիթը մաքրել չի՝ մեկ-երկու, և վերջ: Դաստիարակությունը երկար տարիների գործ է, խիստ ծանր ու բարդ աշխատանք:

ՏՂԱ— Մի օր հո սկսո՞ւմ են էդ ծանր ու բարդ աշխատանքը:

ՀԱՅՐ— Անշուշտ:

ՏՂԱ— Դե, դու էլ հենց էսօր սկսիր: Ճիշտ չի՞...

ՀԱՅՐ— (Իրենից դուրս գալով): Գրողը տանի, հասկացիր, վերջապես, որ ես սկսել եմ շատ վաղուց: Դու քանի՞ տարեկան ես:

ՏՂԱ— Նոյեմբերի տասնյոթին կլրանա տասս:

ՀԱՅՐ— Ահա, ուրեմն, քո դաստիարակության գործը սկսել եմ դեռևս տասը տարի առաջ և շարունակում եմ առ այսօր:

ՏՂԱ— Բա ինչո՞ւ ընկեր Էմման ասում...

ՀԱՅՐ—Ընկեր Էմման, ընկեր Էմման... Շա՛տ բան է հասկանում քո այդ ընկեր Էմման... Ասա խնդրեմ, մի՞թե ես առաջ չեմ տանում քո հետաքրքրասիրությունները տեխնիկայի ուղղությամբ: Այն հիանալի «Կոնստրուկտորը» ո՞վ է առել քեզ

համար... Գուցե ընկեր Էմման...
ՏՂԱ— Դու ես առել:
ՀԱՅՐ— Մի՞թե ամեն անգամ չեմ ասում, որ ապուրի վրայից սառը ջուր չեն խմում, որ ուտելիս չի կարելի բերանը չփչփացնել, որ ընդհանուր ափսեից առաջին հերթին մեծերը պետք է վերցնեն, հետո միայն դու... Ասո՞ւմ եմ, թե ոչ:
ՏՂԱ— Ասում ես:
ՀԱՅՐ— Իսկ այդ ամենը ի՞նչ է, գրողը տանի, եթե ոչ դաստիարակություն:
ՏՂԱ— Իսկ ի՞նչ բան է «գրողը տանի»:
ՀԱՅՐ— Դա գործին չի վերաբերում:
ՏՂԱ— Պարզ է:
ՀԱՅՐ— Պա՞րզ է... Ի՞նչն է պարզ, գրողը տանի, հը՞, ի՞նչն է պարզ:
ՏՂԱ— Որ դա գործին չի վերաբերում:
ՀԱՅՐ— Ի՞նչը:
ՏՂԱ— «Գրողը տանին»:
ՀԱՅՐ— Այս տղան ինձ կգժվեցնի:
ՏՂԱ— Ինչի՞ ես գժվում, հայրիկ:
ՀԱՅՐ— Որովհետև քեզ պես անհասկացող դմբոները անմիտ-անմիտ հարցեր են տալիս: Եվ առհասարակ ի՞նչ սովորություն է շարունակ ինչուներով հետապնդել մարդուն...
ՏՂԱ— Լավ, էլ չեմ անի:
ՀԱՅՐ— Փա՛ռք աստծու:
ՏՂԱ— (Հառաչելով): Դու դաստիակել չգիտես:
— ՀԱՅՐ— Ի-ի՞նչ...
ՏՂԱ— Հեչ, դաստիարակել չգիտես:
ՀԱՅՐ— (Գլուխը բռնելով): Աստվա՛ծ իմ, ես կխելագարվեմ... Ես դաստիարակել չգիտեմ... Դաստիարակել չգիտեմ, չգիտեմ, չգիտեմ... Դու իրավացի ես, գրողը տանի, այլապես այդ լեզվով չէիր խոսի ինձ հետ, ինձ, ինձ, որ, դժբախտաբար, քո հայրն եմ.. Դաստիարակել չգիտեմ, չգիտեմ, չգիտեմ... (Հուսահատ նըստում է բազմոցին, Տղայի մոտ: Երկարատև լռություն): Հիմա ի՛նչ անեմ քեզ հետ, հը՞:
ՏՂԱ— (Վեհերոտ): Մի քիչ զբաղվիր:
ՀԱՅՐ— Ինչ արած՝ զբաղվեմ, քանի որ փրկություն չկա: Ինչի՞ց սկսենք:
ՏՂԱ— Ինչից ուզում ես:
ՀԱՅՐ— Հասկանում ես, ըմմմ... մարդը հասարակական կենդանի է:
ՏՂԱ— Չէ, չեմ հասկանում:
ՀԱՅՐ— Այ, վերցնենք, օրինակ, կովը...
ՏՂԱ— Ո՞ր կովը:
ՀԱՅՐ— Նշանակություն չունի: Որևէ կով:
ՏՂԱ— Տատիկի Շեկո՞ն:
ՀԱՅՐ— Թեկուզ այդպես: Ի՞նչ է անում տատիկի Շեկոն:
ՏՂԱ— Կաթ է տալիս:
ՀԱՅՐ— Ապրե՛ս, կաթ է տալիս: Այդ կաթից մածուն ենք պատրաստում, պանիր, յուղ: Կովը օգտակար կենդանի է, բայց ընդամենը այդքան: Նա չի մտածում, չի կարող մտածել...
ՏՂԱ— Հո մարդ չի, որ մտածի:
ՀԱՅՐ— Ապրես: Մտածում է միայն մարդը: Դրա համար էլ ասում ենք՝ մարդը բանական կենդանի է, այսինքն՝ մըտածող, խորհող արարած: Մարդը... Էլի՞ կոշիկներով ես ներս եկել:
ՏՂԱ— Հողաթափերը չգտա:
ՀԱՅՐ— Մա՛րշ այստեղից: Ամբողջ պարկետը դու ես փչացնում:
ՏՂԱ— Հայրիկ, ախր...
ՀԱՅՐ— Էլ մի երկարացնի: (Տղան դուրս է գնում): Դաստիարակությո՛ւն: Հազար անգամ ասա՝ մի ականջից մըտնում է, մյուսից՝ դուրս գալիս: (Հեռախոսի զանգ): Լսում եմ: Ո՞ւմ: Այստեղ ոչ մի Սերենադա չկա: Սխալ եք զանգել: Ոչ: Լսեցեք, քաղաքացի, ես ձեզ հայերեն լեզվով ասացի՝ սխալ եք զանգել, իսկ դուք շարունակում եք անկետա լրացնել... (Տղան ներս է գալիս հողաթափերով): Աշխատեցեք մյուս անգամ չսխալվել: (Դնում է լափողը): Հողաթափերը գտնըվեցի՞ն:
ՏՂԱ— Սառնարանի տակ էին:
ՀԱՅՐ— Նստիր: Ուրեմն, ո՞ւր հասանք...
ՏՂԱ— Մարդը բանական կենդանի է:
ՀԱՅՐ— Այո: Մարդը ապրում է իր նմանների հետ, որոնց ընդհանրությունը կոչվում է հասարակություն: Մարդը չի կարող հասարակությունից դուրս ապրել, նա հասարակության անդամ է: Ուստի պետք է օգտակար լինի այդ հասարակությանը: Բայց որպեսզի, օրինակ, դու դառնաս հասարակության օգտակար անդամ, պետք է կրթություն ստանաս, դաստիարակվես...
ՏՂԱ— Ես չեմ ուզում օգտակար անդամ լինել: Ես ուզում եմ տաքսիի վարորդ դառնալ:
ՀԱՅՐ— Տաքսիի վարորդն էլ հասարակության օգտակար անդամ է, ինչպես և բժիշկը, հանքափորը, ուսուցիչը, կըթվորուհին...
ՏՂԱ— Դու է՞լ:

ՀԱՅՐ— Բնական է:
ՏՂԱ— Լավ, շարունակիր դաստիարակել:
ՀԱՅՐ— Այդպես, ուրեմն... Բայց եթե մարդ ուզում է իսկապես օգտակար անդամ դառնալ, ապա պետք է ազնիվ լինի, աշխատասեր, արդարամիտ ու բարի: Նա պետք է լինի... Բայց դու ինձ չես լսում:
ՏՂԱ— Մայրիկն է՞լ է օգտակար:
ՀԱՅՐ— Մայրի՞կը: Անշուշտ:
ՏՂԱ— Իսկ ո՞վ է ավելի օգտակար՝ մայրի՞կը, թե դու:
ՀԱՅՐ— Հըմ... Դա ի՞նչ կարևոր է: Երկուսս էլ օգտակար ենք: Իսկ այժմ...
ՏՂԱ— Հայրիկ...
ՀԱՅՐ— Այո:
ՏՂԱ— Մի՞շտ պիտի էդպես լինել:
ՀԱՅՐ— Ինչպե՞ս:
ՏՂԱ— Էդպես, էլի... Աշխատասեր ու մյուս բաները:
ՀԱՅՐ— Իհարկե, միշտ: (Լռություն): Քթիդ հետ մի խաղա:
ՏՂԱ— Կիրակի օրե՞րն էլ:
ՀԱՅՐ— Այո: Ասացի՝ քթիդ հետ մի խաղա:
ՏՂԱ— (Երկար մտածելով): Ձեղա՞վ:
ՀԱՅՐ— Ի՞նչը չեղավ:
ՏՂԱ:— Էդ իմ բանը չի:
ՀԱՅՐ— Քեզ թվում է միայն: Փորձիր և կտեսնես, որ այնքան էլ դժվար չէ:
ՏՂԱ— (Լռությունից հետո): Լավ, կըփորձեմ:
ՀԱՅՐ— Այ, ապրես: Ես գիտեի, որ դու հաստատակամ տղա ես: Ուրեմն, այսօրվանից ո՛չ մի սուտ, ո՛չ մի փչոց: Միայն ու միայն ճշմարտություն: Աշոտի հոլը կվերադարձնես: Կարգի կբերես անկյունդ: Ակնոցը թաքցնելու համար մորաքրոջից ներողություն կխնդրես: Ամեն անգամ ուտելուց առաջ և հետո օճառով մի լավ կլվացվես: Հատկապես ձեռքերդ, որոնք սկսում են ճաքճքել:
ՏՂԱ— (Ապշած նայելով հորը): Էդքան շա՜տ... Դու ասիր՝ աշխատասեր, հպարտ ու մի բան էլ...
ՀԱՅՐ— Ազնի՛վ: Իսկ այդ նշանակում է՝ վերադարձնել հոլը, ներողություն խնդրել...
ՏՂԱ— (Մտքի մեջ ընկնելով): Ուտելուց առաջ կլվացվեմ:
ՀԱՅՐ— Ապրես:
ՏՂԱ— Հետո... Հա, հետո ինչի՞ համար:
ՀԱՅՐ— Հիգիենիկ նպատակներով:



**ՏՂԱ**— Լավ, հետո էլ հիգիենիկ...

**ՀԱՅՐ**— Ապրես:

**ՏՂԱ**— Օճառով:

**ՀԱՅՐ**— Ըհը՛...

**ՏՂԱ**— Հոլը... Լավ, հոլն էլ կտամ, չըռնայած չարժի: Էդ Աշոտը զոռանի մեկն է: Տարել եմ, գիտե՞ս:

**ՀԱՅՐ**— Ոչինչ:

**ՏՂԱ**— Բայց մորաքույրից ներողություն չեմ խնդրի:

**ՀԱՅՐ**— Չեղավ: Դա անազնվություն է:

**ՏՂԱ**— Երկու անգամ կլվացվեմ: Ծնկներս էլ կսրբեմ թաց սրբիչով:

**ՀԱՅՐ**— Տղամարդ եղիր: Դա փոքրոգություն է... Սպասի՛ր, սպասի՛ր, ո՞ւր այդպես:

**ՏՂԱ**— Բակ:

**ՀԱՅՐ**— Ինչպե՞ս թե...

**ՏՂԱ**— Դու կարևոր գործ ունես, հայրիկ, գրիր, իսկ դաստիարակությունը մընա գարնանը, լա՞վ: *(Դուրս է ծլկում:*

*Հայրը սկսում է շփոթված ետ ու առաջ քայլել սենյակում ու ծխել: Ներս է մտնում Մայրը: Զգացվում է, որ նա հենց նոր է ազատվել շուկայի բեռից):*

**ՄԱՅՐ**— Շուկա մտնել չի լինում: Անաստված թանկություն է:

**ՀԱՅՐ**— Ամեն օր նույն խոսակցությունը...

**ՄԱՅՐ**— Որ շուկա գնաս, դու էլ չես կարող չխոսել... Աշխատո՞ւմ էիր:

**ՀԱՅՐ**— Ի՞նչ աշխատել: Ամբողջ օրը զբաղված էի տղայիդ դաստիարակությամբ:

**ՄԱՅՐ**— *(Թեթև հեգնանքով)*: Ես այդ իսկույն զգացի: Դեռ ներս չմտած՝ նա հարձակվեց վրաս. «Գրողը տանի, մայրիկ, ինչո՞ւ ես էսքան ուշանում»:

**ՀԱՅՐ**— Չի՛ կարող պատահել: Հենց այդպես էլ ասա՞ց:

**ՄԱՅՐ**— Պատկերացրու:

**ՀԱՅՐ**— Անպիտա՛ն տղա: Կապը բոլորովին կտրել է: Հը՛մ, լավ չէ, լավ չէ... *(Դադար)*: Բայց, իսկապես, ինչո՞ւ ես այսքան ուշանում:

*Հանկարծ նորից մտնում է տղան և, գլուխը կախ, կանգնում դռան մեջ: Հայրըն ու մայրը հարցական նայում են նըրան:*

**ՏՂԱ**— Հայրիկ, հենց նոր Անուշին տեսա աստիճանների վրա... Այնքան երկար հյուսքեր ուներ... Ախր ո՞նց չքաշեի... Մինչև հիմա լաց է լինում ցավից... Հայրիկ... Հայրիկ, դաստիարակիր ինձ...

Վարագույր







## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

# Ագռավը

Շունը ասաց ագռավին.
— Հաֆ, հաֆ, հաֆ,
Ի՞նչ ես նստել դու ծառին,
Այ ագռավ:

Ձեռքդ պանիր է ընկել՝
Յուղոտ մի կտոր,
Կամ կեր, կամ էլ տար-պահիր՝
Պետք կգա մի օր:

Թե չէ արդեն քանի ժամ
Ճյուղին ես թառել,
Բան ու գործից մեզ զրկել,
Քեզնով ես արել:

— Մեղավորը ես հո չե՞մ,
Այ իմ շուն ախպեր,—
Ու ագռավը հառաչեց,—
Դու կարդա գրքեր:

Գրքում գրված է, որ ես
Պանրին ձեռք չտամ՝
Պակասում է մի աղվես,
Որ անմահանամ:

Բայց վատն այն է՝ հոգնել է
Մեր խեղճ աղվեսը,
Կամ էլ արդեն փախել է
Նրա հավեսը:

Հիմա ճյուղին լուռ նստած
Ես չեմ հասկանում,
Հանկարծ աղվեսը չեկավ՝
Սա ի՞նչ եմ անում:

Ախր ճիշտը որ ասեմ՝
Բայց մարդու չասես,
Պանիր չեմ սիրում, գիտե՞ս,
Ես՝ ընդհանրապես:

ՀԱՅԿԱՐԱՄ ՆԱՀԱՊԵՏՅԱՆ, Երևան, № 114 դպրոց, 4-րդ դաս.



ՀԱՄԱՅԱԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ, 10 տ.
Ապարանի շրջան, գ. Քուչակ

ԼՅՈՒԴՄԻԼԱ ԹԱՐՈՅԱՆ,
Մարտունու շրջան, գ. Մադինա

ԱՎԵՏԻՍՅԱՆ ՀՐԱՅՐ 14 տ.,
ք. Ստեփանակերտ

Մեր զգացմունքները հաճախ նմանվում են հանկարծակի ծառս եղած նժույգի, որը, չենթարկվելով ձիավորին, գլուխը կորցրած սլանում է: Հավանաբար, յուրաքանչյուր ոք կյանքում ապրել է իր համար այն ստորացուցիչ պահը, երբ չկարողանալով տիրապետել սեփական զգացմունքներին, հիմար արարքներ է կատարել: Բայց որքան ես ամաչում և անհարմար զգում հետո, երբ այդ զգացմունքները խաղաղվում են, և պարզապես չես իմանում ուր թաքնվել ինքդ քեզանից:

Իսկ ինչպե՞ս սովորել ինքնատիրապետման արվեստը, կառավարել սեփական զգացմունքները: Կարելի՞ է արդյոք դրանք ղեկավարել և ի՞նչ չափով: Չէ՞ որ հենց զգացմունքներն են հաճելի դարձնում մեր կյանքը: Ու ինչպես Դոստոևսկին է ասել. «Կյանքը պետք է սիրել ավելի, քան նրա իմաստը»: Վերջերս ինչ-որ տեղ կարդացի, որ մարդն ընդհանրապես չպետք է զսպի իր զգացմունքները, որ իբր թե դա վնաս է առողջությանը: Հարց է ծագում. ո՞ւմ առողջությանը, իր սեփակա՞ն, թե՞ ուրիշի: Եվ ի՞նչ բան է մարդկային ոգին, որի հետ ես մեծ հույսեր եմ կապում:

Վերջերս ինձ մի այսպիսի դեպք պատմեցին: Մի պատանու ծնողներն արգելել են հանդիպել իր սիրած աղջկա հետ, և պատանին նետվել է գնացքի անիվների տակ: Ի՞նչ զգացմունքներով է նա առաջնորդվել: Ի՞նչ է եղել դա, հուսահատությո՞ւն, վրիժառությո՞ւն, թե՞ կյանքի գնով իր ինքնուրույնությունը պահպանելու ցանկություն: Ամենայն հավանականությամբ՝ վերջինը: Բայց այդպիսի մահը ելք չէ անելանելի դրությունից: Ինչ-որ տեղ դա նաև եսասիրություն է: Հապա ո՞ւր մնաց սերը աղջկա հանդեպ: Իսկ ծնողնե՞րը: Զգացմունքների ծայրահեղ լարումը կործանեց նրան: Պատանու համար բոլորովին միևնույնն է՝ կարդապացնե՞ն իրեն, թե՞ կմեղադրեն: Մահը բողոք է, բայց հերոսությո՞ւն է, թե՞ փոքրոգություն՝ դժվարանում եմ ասել: Հավանաբար, երկուսն էլ միաժամանակ:

Ես գիտեմ դեպքեր, երբ անպատասխան սիրուց կախվել են, խեղդվել, թունավորվել: Հասկանալ կարող եմ նրանց, բայց ներել՝ ոչ: Իմ կարծիքով, դա կույր եսասիրություն է: Պատանեկության տարիներին իմ մեջ էլ է անպատասխան սիրուց ծնվել ինքնասպանության գաղափարը: Իսկ ի՞նչն է ինձ կասեցրել: Միտքը մերձավորներիս մասին և այն ցնցումն ու տառապանքը, որ ես նրանց կպատ-

ՎԻԿՏՈՐ ՌՈԶՈՎ

# Կամք



Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ճառեի իմ այդ արարքով: Ես պետք է ինքս տառապեի և թույլ չտայի, որ իմ պատճառով տառապեին բոլորովին անմեղ մարդիկ: Իսկ հետո, բավականին ուշ ես հասկացա, որ տառապանքը նույնպես կյանքի երջանկություններից է, նրա լիարժեքության արտահայտությունը, ուժն ու գեղեցկությունը: Եվ որ դա, ի վերջո, անցողիկ է: Իսկ որպես գրողի՝ դրանք ինձ պետք եկան ստեղծագործելիս:

Ես խղճում եմ այն երիտասարդներին, որոնք անվերջ փնթփնթում են, հուսահատվում և չեն կարողանում հաղթահարել որոշ արգելքներ: Իսկ իմ մեջ խոչընդոտները միշտ մոլուցքի զգացում են գրգռել, և ամեն կերպ դրանք հաղթահարելու ձգտում: Ես սիրում եմ մոլուցքի զգացումը: Պայքարի մոլուցքը, որը ոչ թե խաղ է, այլ՝ կյանքի շարժում:



Այսպիսով, ինչպիսի զգացմունքներ պետք է մեր մեջ դաստիարակենք և ինչպիսիները՝ վերացնենք:

Ըստ իս, չկան վերացական լավ և վերացական վատ զգացմունքներ: Դրանք կոնկրետանում են տվյալ իրավիճակներում, և հենց այստեղ է, որ յուրաքանչյուր ոք պետք է որոշի իր արարքների անհրաժեշտությունը՝ որպես իր զգացմունքների դրսևորում: Եվ եթե դրանից դիմացինը լավ է զգում, ուրեմն՝ լավ արարք է, և հակառակը: Իմ կարծիքով, սա է միակ ճշմարիտ չափանիշը:

Երբեմն մարդու մեջ ծնվում են ստոր ցանկություններ, որոնք նա կցանկանար իրագործել: Շատ հաճախ այդ զգացմունքները զսպվում են պատժի կամ վրեժխնդրության վախից: Ժամանակակից հասարակարգում զսպվածության նմանօրինակ սկիզբն անհրաժեշտ է: Բայց առավել իրագործելի և մարդկային սկիզբ պետք է լինի մարդկային ոգին, որը ի հայտ է բերում անհատի ներդաշնակությունը: Եվ զարմանալին այն է, որ այդ ոգին բոլորովին էլ պայմանավորված չէ կրթվածությամբ և կուլտուրայով: Ես ճանաչում եմ շատերին, ովքեր չունեն բարձրագույն կրթություն, բայց փոխարենը ունեն մաքուր և պարզ հոգի: Եվ ճանաչում եմ նաև այնպիսիների, ովքեր կրթված, բայց սարսափելի տհաճ անձնավորություններ են:

Մարդը ի ծնե իր մեջ կրում է բազմաթիվ «սարքեր», ինչպես այն նավը, որ հեռավոր նավարկության է դուրս եկել: Այդ սարքերի միջոցով է նավը ճամփա ընկնում: Եթե դրանցից մեկնումեկը կոտրվի, նա կարող է շեղվել ընթացքից, նույնիսկ ծանծաղուտ ընկնել և աղետի ենթարկվել: Կարողանալ խնամքով պահպանել այն նրբին «սարքերը», որոնցով մեզ օժտում է բնությունը ի ծնե, մեծ, շատ մեծ բան է: Կոտրելը հեշտից էլ հեշտ է:

Իմ կարծիքով, անհատը ձևավորվում է ինքն իր հետ անվերջանալի պայքարով, պայքար, որը, սակայն, տեղի է ունենում մարդկային բնության և ձևավորվող բնավորության միջև: Ո՞րն է մարդկային բնությունը: Թերևս այն, որով ծընվում է մարդը: Մի պահ ընդունենք, որ մարդը ծնվել է իշխանատենչ հակումներով, հիշաչար է և վրիժառու: Նա իր մեջ ի ծնե արատներ է տեսնում և սովորում է տիրապետել դրանց, այսինքն՝ իր մեջ բնավորություն է ձևավորում: Նրա բնույթն անփոփոխ է, իսկ բնավորությունը կարող է տարբերվել իր բնությունից: Եթե նա թույլ բնավորություն ունի, ապա նրա մասին կարող են ասել, որքան իշխանատենչ է, հիշաչար և վրիժառու: Իսկ եթե դաստիարակելով իր բնավորությունը, մարդ կարողանում է տիրապետել իր զգացմունքներին, նրա մասին կասեն. որքան ուժեղ է, զուսպ և վայելուչ վարմունք ունի:







Լուսանկարները՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

# ԿԱՎԵ ՍԱԼԻԿՆԵՐԻՑ ՄԻՆՉԵՎ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԹՈՒՂԹԸ

Ինչպիսի՞ն կլիներ մեր այսօրվա կյանքը, եթե չլինեին գիրք, թերթ, ամսագիր...

Ե՞րբ և ինչի՞ վրա է արված առաջին արձանագրությունը: Դժվար է այս հարցին ճշգրտորեն պատասխանել: Սակայն կան անհերքելի ապացույցներ, որ մեր թվարկությունից առաջ IV և *III* հազարամյակներում շումերները գրում էին կավե սալիկների վրա: Բրուտները սովորական կավից պատրաստում էին սալիկներ, որոնց խոնավ մակերեսին փայտի կամ քարի սուր ծայրով գրում էին: Հետո դրանք հատուկ վառարաններում թրծում էին և հազարավոր տարիներ կավե սալիկն իր վրա պահում էր այդ արձանագրությունները:

Ասորեստանի մայրաքաղաք Նինվեում է գտնվել հին աշխարհի ամենախոշոր գրադարանը, որը հարստացրել է հատկապես ասորական Աշուրբանիպալ թագավորը մեր թվարկությունից առաջ VII դարում: Հենց այդ գրադարանում էլ մոտ հարյուր տարի առաջ հայտնաբերվեց կավե սալիկների վրա գրված մարդկության գրական կոթողներից հնագույնը՝ «Գիլգամեշը»: Նինվեի պատմական գրադարանում երեսուն հազարից ավելի սեպագիր կավե սալիկներ կային:

Եգիպտացիները մի քայլ առաջ անցան շումերներից, հայտնագործելով պապիրուսը, որը բազմամյա խոտաբույս է, հաստ, հիմքում թեփուկաձև տերևներով, մինչև հինգ մետր բարձրությամբ: Աճում է արևադարձային Աֆրիկայում, գետերի, լճերի ափերին և դանդաղ հոսող ջրերում:

Մեր թվարկության առաջին դարում բնագետ Պլինիուս Ավագը իր աշխատություններում մանրամասն նկարագրել է գրելանյութ ծառայող պապիրուսի պատրաստման մանրամասները: Պապիրուսի բունը նախ մաքրվում է արտաքին կեղևից, որից հետո միջուկը կտրում են ուղղահայաց և տեղավորում խոնավ տախտակի

վրա: Պապիրուսի առաջին շերտի վրա շարվում է երկրորդը, երրորդը: Հետո այդ շերտերը մամլվում են: Եղեգների միջուկներից արտազատված հյութը սոսնձում է թերթանման զանգվածը՝ տալով նրան ամուր տեսք: Հետո այն հղկըվում է հատուկ ձևի փղոսկրով և չորացվում արևի տակ: Այսպես ահա ստացվում է յուրօրինակ թուղթ, որն ունի գորշ ավազի գույն: Պապիրուսը մեծ մասամբ կիրառվել է թղթե գլանների տեսքով, որոնց երկարությունը հասել է մոտ երեք մետրի, իսկ լայնությունը՝ տասնհինգից մինչև երեսուն սանտիմետրի:

Պապիրուսը որպես գրելանյութ ըստեղծվեց և կիրառվեց մեր թվարկությունից առաջ II-րդ հազարամյակում, դառնալով փարավոնների մենաշնորհը: Հազարավոր ստրուկների անվճար աշխատանքով ստացված այդ յուրօրինակ թուղթը վիթխարի եկամուտներ էր բերում: Հետագայում պապիրուսն անցավ Հռոմ, Հունաստան, Միջագետքի երկրներ:

Հավաստի փաստերը վկայում են, որ մեր թվարկությունից առաջ, Հնդկաստանում, որպես գրելանյութ կիրառվել է նաև արմավենու տերևը:

Շուտով Պերգամոնում սկսեցին պատրաստել ավելի բարձր որակի գրելանյութ, օգտագործելով անասունների մշակված կաշիները: Այդ թղթանման նյութը՝ պերգամենտը, «հաղթեց» պապիրուսին: Թեև պերգամենտը ավելի թանկ էր պապիրուսից, բայց այն ուներ մի շարք հիանալի հատկություններ՝ անհամեմատ ավելի դիմացկուն էր, գրվում էր երկու երեսի վրա և, վերջապես, կարող էր ծալվել ու դառնալ գիրք, այն դեպքում, երբ պապիրուսը չուներ այդ հատկությունները: Որոշ ժամանակ անց այդ գրելանյութը օգտագործվեց արևմտյան բոլոր ազգերի մեջ պերգամենտ անունով:

Հայերը պերգամենտը չընդունեցին և գործածության մեջ դրվեց մագաղաթ բառը, որը սեմական ծագում ունի և արաբերենից է փոխառնված: Հայաստանում մագաղաթ պատրաստում էին մագաղաթագործները՝ հորթի, գառի, ուլի կաշվից: Հիշարժան է Տարոնի Առաքելոց վանքի երկհատոր Մեծ Տոնական կոչվող ձեռագիրը: 1203 թվականին գրված այդ գրքի հիշատակարանում ասվում է, որ գրքի մագաղաթը պատրաստվել է հորթի կաշվից: Հասկանալի է, որ երկու-երեք հարյուր էջանոց այդպիսի գրքի համար, հարյուրից ավելի հորթ էր հարկավոր մորթել: Փոքրադիր գրքերի՝ ավետարանի, սաղմոսի, աղոթագրքի, ինչպես նաև տաղարանի համար անհրաժեշտ մագաղաթը պատրաստում էին մատղաշ կենդանիների՝ գառի, ուլի, հորթուկի կաշիներից: Մագաղաթները լինում էին սպիտակ-կաթնագույն և գորշդեղնավուն:

Թղթի հրապարակ գալով, մագաղաթի գործածությունը միանգամից չդադարեց: Ավելին, ընտիր ձեռագրերի, հատկապես մանրանկարներ ունեցող գրքերի համար գերապատվությունը տրվում էր մագաղաթին: Հայ գրիչները մագաղաթն օգտագործում էին մինչև XV—XVI դարերը:

Հունաստանում գրում էին մոմապատ տախտակե սալիկների վրա: Մոմի հարթ մակերեսը փաստորեն «թուղթն» էր, իսկ գրիչը մի փայտիկ էր, որի մի ծայրը սուր էր՝ գրելու համար, իսկ մյուսը՝ թիակի



Կավե սեպագիր փաստաթուղթ, Ուրարտու
(տեքստի տակ փորագրովի քարե կնիքներ են)

էր նման, որով մոմը կոկում, հարթեցնում էին: Այդ փայտիկը հունարեն կոչվում էր ստիլ, որտեղից էլ հետագայում ծնվեց գրականագիտական ստիլ, ոճ արտահայտությունը: Փարիզում, մինչև XIII-րդ դարը դեռևս կային ստիլ պատրաստող արհեստանոցներ:

Մարդիկ գրել են նաև սովորական կեչու կեղևի վրա: Հնագետների կողմից հայտնաբերված կեչու կեղևի այդ կտորները մի քանի հարյուր տարեկան են: Երբ գիտնականներն առաջին անգամ դրանք զգուշորեն, մեծ դժվարությամբ բացեցին, տեսան, որ դրանց վրա բառեր են խազված: Այդ բառերը հին ռուսերենով էին, որով խոսել են հարյուրավոր տարիներ առաջ: Գտածոները սովորական նամակներ, երկտողեր էին: Կեչակեղևի վրա գրել են ոսկե կամ մետաղե սուր ձողիկներով: Նովգորոդում գտնվել են հարյուրավոր կեղևագրեր, որոնք հին Ռուսաստանում կոչվել են նամակներ ու փաստաթղթեր: Հայտնի չէ՝ երբ են մարդիկ դրանք կա՛մ կորցրել, կա՛մ դեն նետել: Իսկ այսօր այդ կեղևագրերը պատմում են հին ռուսական մշակույթի և մարդկանց մասին: Կեղևագրեր գտնվել են նաև Ռուսաստանի այլ հնագույն քաղաքների պեղումների ժամանակ:

Համաշխարհային քաղաքակրթության պատմության մեջ շրջադարձային պահ էր թղթի հայտնագործումը, որի պատրաստման եղանակը հայտնաբերվել է Չինաստանում, մեր թվարկության II-րդ դարում: Եվրոպայում թուղթը կիրառվել է միայն 11—12-րդ, իսկ Հայաստանում՝ 8—9-րդ դարերից: Թղթի վրա մեզ հասած ամենահին հայերեն ձեռագրերը պատկանում են X դարին:

Թղթի արտադրության համար օգտագործվում է տարբեր փայտանյութերի ու միամյա բույսերի թաղանթանյութ՝ ցելյուլոզան: Համառոտակի այն կարելի է ներկայացնել այսպես: Նախ պատրաստում են թղթազանգվածը՝ ցելյուլոզան, այնուհետև թղթի պատրաստման մեքենայի վրա կատարվում են հատուկ մշակումներ՝ նոսրացում ջրով, զանգվածի մաքրումը կեղևից, մամլում և չորացում: Ի վերջո, ստացված թուղթը տեսակավորվում է և փաթաթվում: Հայտնի է մոտ վեց հարյուր տեսակի թուղթ:

Չպետք է կարծել, թե թուղթը միայն կիրառվում է տպագրության մեջ: Քիմիան թղթին պարգևեց նոր կյանք՝ նոր կիրառություններով: Թուղթն այսօր մետաղի, քարի, ապակու, կաշվի և գործվածքի արժանավոր մրցակիցն է: Հրաշագործ քիմիայի օգնությամբ, մեր դարի կեսերին հնարավոր դարձավ ստանալ էլեկտրահաղորդ մետաղները կոռոզիայից պաշտպանող և այլ հատկություններով օժտված թղթեր:

Անհավատալի է, բայց փաստ է, որ թուղթ կարելի է ստանալ նաև մետաղից: Այդ ձևով ստացված թուղթը շատ թանկ է, քանի որ մետաղաթել պատրաստելը շատ բարդ պրոցես է:

Սկզբունքորեն թուղթ կարելի է ստանալ նավթից, բնական գազից, ապակուց, քարից, սինթետիկ մանրաթելից, պոլիմերային տարբեր թաղանթներից: Հիշյալ նյութերի կիրառումը թղթի արտադրության մեջ հնարավոր կդարձնի խնայել անտառանյութը:

ԱՍԱՏՈՒՐ ՓԱՇԱՅԱՆ





Կեչակեղևե հրովարտակ, Նովգորոդ XIV դ. վերջ, XV դ. սկիզբ



Տախտակ՝ փորագրված այբուբենով, Նովգորոդ XIII—XIV դդ.

# Հերանուշ Արշակյան




Ապրեց ընդամենը 17 տարի.. Ապրեց գեղեցիկ, սխրալի բանաստեղծական կյանքով: Գեղեցիկ, որովհետև իր կարճատև կյանքի ուղեկիցները հոգևոր թըռիչքներն էին, գերզգայիկ քամիների պես փխրուն ու եթերային: Մահվան մահճում էլ նա շարունակում էր ապավինել բընությանը: Ոչ, դա մենավոր, անբուժելի աղջկա հոգու տվայտանքը չէր, ոչ էլ վախճանի նախադռանը վերջին, անհուսալի քայլերի գիտակցում, այլ կյանքի սեր, կյանքի անհագ կարոտ:

... Այսօր, երբ մեկ անգամ ևս թերթում ենք Հ. Արշակյանի գըրական ժառանգությունը (բանաստեղծություններ, արձակ էջեր, նամակներ), մեզ համար մի բան է կարևորվում. ինչպե՞ս է այդ «երազե, Նիրվանայե շինված» աղջիկը, որին «աստված ծաղիկ ըստեղծած ըլլալու էր», կարողացել այդքան կարճ ժամանակում հասնել բանաստեղծական լուրջ խտացումների, և ի՞նչն էր նրան ստիպել իր տառապալի օրերին գրել բանաստեղծություններ: Գուցե դրանք ինքնասփոփման ճիգե՞ր են եղել, գուցե առեղծվածային ինչ-որ բանի՞ է հավատացել:

Այս տարի «Սովետական գրող» հրատարակչությունը Հերանուշ Արշակյանի ծննդյան 100-ամյակի առթիվ լույս կընծայի նրա «Լուսնյակ» խորագրով բանաստեղծությունների և արձակ էջերի ժողովածուն:

**ԱՐԹՈՒՐ ԱՆԴՐԱՆԻԿՅԱՆ**

## Նոճիին քով

Կես գիշեր է. սենյակիս մեջ առանձին<br>
ու մինակ,<br>
Կրթըներ եմ պատուհանիս եզերքին<br>
տխրունակ,<br>
Նայվածքս հեռո՜ւն՝ անհունին մեջ կապույտին<br>
կորսված,<br>
Մտածումներս մտքիս մեջ կը պտույտքին<br>
տխրամած:<br>
Դեմս է խաղաղ հանգստարանն ալ վերջին<br>
շատ տրտում,<br>
Ուրտեղ խեղճուկ շատ ոսկորներ կը հանգչին<br>
անհատնում,<br>
Կես գիշերվան հովը մեղմով կը շարժե<br>
սա նոճին,<br>
Ու կը հպի վարագույրին շղարշե<br>
մահիճին.<br>
Որչափ որ մութ է գիշերը, որչափ սև՝<br>
սա նոճին,<br>
Այնքան սև են ցավերը սրտիս արդարև<br>
որ կանճին.<br>
Օրին մեկը թե որ ես ալ հոն պառկիմ<br>
նոճիին քով,<br>
Ո՞վ է որ զիս պիտի հիշե տրտմագին<br>
ու սիրով...

## Հնչյակ

Մեկուսի մնացած պատերուն ետին ցից,
Քաղաքին անցքերէն անգիտակ ես կ'անցնիմ,
Գլխուս վրա՝ ընդարձակ կա երկինքը անբիծ,
Ոտքիս տակ մոխրագույն տափարակ մը գետին։

Հոգիս նվազ երգ մըն է, հանկերգ մը հանդարտիկ,
Ջոր հովերը շուտով կը կտրեն չորս կողմեն.
Մամռապատ գետնին վրա-տխրաբո՞յր դալարիք—
Ոտքերըս շատ անգամ գյուղիս հողն կ'որոնեն։

Սակայն երբ իրիկվան, վերջալույսը բոցեղ
Գա հոս-հոն թափելու շուքերը ծառերուն,
Հորիզոնը պճնե իր գույնովը շքեղ,

Ու հովն ալ ուժգնորեն գա ցրվել իմ մազեր,
Կը սիրեմ ես կուրծք տալ փոշիին ու հովուն,
Կրակե վերջալույսն է հիմակ սերս առեր...

## Կապույտը

Երկինքը կապույտ է. աչքերն ալ սիրուն
Մեզի կը նային կապույտով անհուն.
Կապույտ են բոլոր իրերը անուշ,
Ծովերը անհուն, ծաղիկներ քնքուշ,
Ամպերը աննյութ, հոգին լուսեղեն,
Երբոր դուրս կ'ելլա իր պահարանեն։
Սիրած եմ այդ գույն, մարած կամ թե վառ,
Երբ ճերմակներուն մեջեն ժպտի հար.
Սիրած եմ սիրով աղու խունկի պես,
Ինչպես կը սիրեմ աստղերն հրագես։

Սիրված գրքի մը թերթերուն մեջտեղ
Կապույտ ծաղիկ մը կը դնեմ շատ հեղ,
Որպեսզի ով որ օր մը զայն տեսնե,
Ծաղկին հետ անուշ հույզերս ալ հիշե։

## Թաշխանի[1] ծովափը

Հրվանդանի մը հանգույն
Թառած ծովափին վըրան,
Քարոտ բլրակ մը կար, լերկ
Առջևն առած Մարմարան։

Անուշ զեփյուռը մեղմիկ
Գգեր երեսը ծովին,
Ու մեղմով մը կը զարներ
Ալիքները ծովափին։

Կանաչ սեզերն ու մամուռ
Քարերուն վըրան փթթած,
Կը ծլեին միատեղ
Ծովին ջուրով լվացված։

Շատ իրիկուն ես մինակ
Հոն կ' երթայի, ու ժամեր
Կանգնած աղվոր ծովակին
Կը հառեի իմ աչքեր։

Երբ, օր մը, ես նորեն
Այն բլրակին վրա գամ,
Ո՞վ արդյոք մեր երկուքեն
Պիտի փոխված. հո՞ղ դառնա։

---

1 Թաշխան—
Կ. Պոլսի
ծովափնյա թաղերից

## Չորցած վարդը

Վարդ մը ունիմ դեղնած ու չոր,
    զոր կը պահեմ գիրքերուս մեջ,
Եվ որ գարնան անչափ աղվոր
    շքեղ փայլեր լուսանցքին եզր։

Ո՞ւր են հիմակ իր նոխ թերթեր
    բոսորագույն և թավշագեղ,
Լոկ իր տեսքովն իսկ կը դյութեր
    ամեն ակնարկ հանճոյասեր։

Հիմակ խանձած չոր ու դժգույն
    կծկած կմախք մ'է գրքիս մեջ,
Գացին գեղը ու թարմություն,
    ու ակնարկներն զինք չեն փնտրեր։

Գերեզմանին մեջ այս սակայն
    ան կը բուրե իր հոտն անույշ,
(Անոր հեշտանքն անմահական,
    որով պահեմ միշտ զինք զգույշ)։

Դու անշուշտ հիշում ես, որ բոլորովին վերջերս մեզ մոտ ցուցադրվում էր մի կինոնկար, որն ուներ առաջին հայացքից տարօրինակ՝ «Երկաթե դիմակը» վերնագիրը և որը, ինչպես վկայում էր նրա ազդագիրը, նկարահանվել էր ըստ Ալեքսանդր Դյումայի համանուն վեպի: Իսկ դու գիտե՞ս, որ «Երկաթե դիմակի» ամբողջ պատմությունը ճշմարիտ իրողություն է:

Ֆրանսիայի հարավում գոյություն ունի փոքրիկ մի կղզի, որը դեռ շատ հնուց հայտնի էր Սանտա Մարգարիտա անունով: Այդ կղզին փոքրիկ է այնքան, որ ոչ մի քարտեզի վրա չի նշվում, և դա՝ նաև այն պատճառով, որ մշտապես եղել է Ֆրանսիայի քաղաքական հանցագործների կալանավայրը: 1698 թ. օգոստոսին, ուժեղացված պահակախմբի հսկողությամբ, այստեղ բերվեց խորհրդավոր մի կալանավոր: Վերջինս բարձրահասակ էր, բարետես, սպիտակ մաշկ ուներ, ազատ խոսում էր ֆրանսերեն: Ուշագրավն այն էր, որ կալանավորը դեմքին սև կտորից (և ոչ թե երկաթից) պատրաստված դիմակ ուներ, առջևի կողմից շարժական ծնոտով, որը հնարավորություն էր տալիս նրան ուտելիք ընդունել: Դիմակը ծածկում էր կալանավորի ամբողջ գլուխը և հատուկ ամրակներով կոճկվում էր ծոծրակի մոտ: Վերջինիս հետ խոսելու կամ նրան որևէ գործով դիմելու իրավունք ուներ միայն պահակախմբի պետը՝ կապիտան Սեն-Մարսը, մյուսներին այդ բանն արգելված էր մահվան սպառնալիքով: Սանտա Մարգարիտա կղզու բանտարկյալները կարողացան նկատել հետաքրքիր մի առանձնահատկություն: Սովորաբար դիմակավոր կալանավորին, ի տարբերություն մյուսների, Սեն-Մարսը դիմում էր մեծ հարգանքով և անպայման «Ազնիվ պարոն» հորջորջումով:

Մի փոքր ժամանակ Սանտա-Մարգարիտայում մնալուց հետո, ուժեղացված պահակախումբը խորհրդավոր կալանավորի հետ միասին ճանապարհ ընկավ դեպի Փարիզ: Ամբողջ ճանապարհին խստությունները մնում էին նույնը: Պահակախմբի անդամները իրավունք ունեին առանց նախազգուշացնելու կրակ բանալ այն դեպքերում, եթե փոքր-ինչ կասկածելի բան նկատեին, իսկ ինքը՝ կապիտան Սեն-Մարսը, գիշերային դադարների ժամանակ հսկողությունն անձամբ ստուգելուց հետո, ավելի ապահով լինելու համար քնում էր «իր» կալանավորի հետ միասին, նույն սենյակում: Այսպիսի խստաշունչ հսկողության պայմաններում, ահա, կալանավորին հասցրեցին Փարիզ և 1698 թ. սեպտեմբերի 19-ից փակեցին հանրահռչակ Բաստիլում, իսկ ինքը, կապիտան Սեն-Մարսը նշանակվեց Բաստիլի պարետ:

Դու, անկասկած, տեղեկություններ ունես Բաստիլի մասին և գիտես, որ այն սկսել է կառուցվել Փարիզի ծայրամասում, 1370 թվականից, որպես բերդ՝ մայրաքաղաքը հարձակումներից պաշտպանելու համար, սակայն հետագայում, 16-րդ դարից սկսած, ճարտարապետ Դ՛ Օրբինոյի նախագծով, վերածվել է սարսափելի բանտի. ի դեպ, ճարտարապետն ինքը շուտով դարձավ իր, մտահղացած բանտի կալանավորը: Բաստիլում կային վանդակ հիշեցնող երկաթե բանտախցեր, կային այնպիսիները, որտեղ կարելի էր տեղավորվել միայն կուացած, երկտակված կամ միայն կանգնած վիճակում: Կար բանտախուց, որի հատակը ծածկված էր թզաչափ բարձրության ջրով, իսկ դա նշանակում էր, որ այնտեղ բանտարկվածը օրեր ու ամիսներ շարունակ պետք է կանգներ, նստեր կամ պառկեր ջրի մեջ, կար վերջապես «Գեղեցկության պալատը»՝ հաճելի կահավորված ու զարդարված մի սենյակ, որի հատակը, սակայն, բացովի էր և այնտեղ մտած ան-



Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

փորձ կալանավորն ընկնում էր պտտվող դանակների վրա...

Այս բոլորն էր ահա պատճառը, որ 1789 թ. հուլիսի 14-ին ապստամբած ֆրանսիական ժողովուրդը քարուքանդ արեց Բաստիլը՝ բռնակալության ու սարսափի այդ սիմվոլը, իսկ նկարիչ Ֆ. Լ. Պրիերը այդ սյուժեով նկարեց «Բաստիլի գրավումը» հայտնի նկարը:

Ահա այս բանտում դիմակավոր կալանավորը պետք է անցկացներ ամբողջ հինգ տարի:

Մի անգամ կալանավորը ճաշից հետո դդալի պոչով ինչ-որ բան գրեց իր անագե ափսեի հատակին և օգտվելով բարեպատեհ առիթից, ափսեն պատուհանից նետեց ցած: Բաստիլի ստորոտում գտնըվող մի երիտասարդ գտավ այն և ափսեի վրայի նշիցից իմանալով նրա պատկանելության մասին (Բաստիլին պատկանող բոլոր իրերը՝ ամաններ, պատառաքաղներ, աթոռներ և այլն, ունեին իրենց առանձնահատուկ նշիքը) բերեց, հանձնեց Սեն-Մարսին:



— Դու կարդացի՞ր սա,— ահեղ ձայնով հարցրեց բանտապետը:

— Մի թերթ,— պատասխանեց երիտասարդը:

Այս խոսակցությունից հազիվ կես ժամ անց երիտասարդին Սենա գետի ափին խեղդված գտան:

Համանման մի դեպք էլ տեղի ունեցավ նախորդից մոտ մի տարի անց: Այս անգամ կալանավորը իր բանտային շապիկի վրա, երկու տողի չափ ինչ-որ բան էր գրել և դարձյալ պատուհանից գցել էր ցած: Շապիկն այս անգամ գտավ մի ձըկնորս և բերելով Բաստիլ, տվեց Սեն-Մարսին:

— Դու կարդացե՞լ ես այստեղ գրածը,— հարցրեց Սեն-Մարսը:

— Ես անգրագետ եմ,— պատասխանեց ձկնորսը:

Չնայած այս հավաստիացմանը՝ ձըկնորսին բաց չթողեցին: Եվ միայն այն բանից հետո, երբ բանտապետը համոզվեց, որ ձկնորսն, իրոք, անգրագետ է, և որ նրա մոտ գտնված շապիկն, իրոք, ոչ ոք չի տեսել, առավել ևս՝ կարդացել, արձակեց նրան, ասելով հետևյալ բազմանշանակալից խոսքերը.

— Գնա՛: Եվ աղոթիր աստծուն, որ կարդալ չգիտեիր:

Չնայած այս անլուր խստություններին, հանելուկային կալանավորի հետ վարվում էին որոշակի հարգանքով, մի անգամ նա Սեն-Մարսից (կալանավորի բանտախուցը մտնելու և նրա հետ խոսելու իրավունք ուներ միայն Սեն-Մարսը) խնդրեց կիթառ (ըստ այլ տվյալների՝ թավջութակ) և համապատասխան նոտաներ նվագելու համար: Նրա խընդրանքը բավարարվեց անմիջապես: Ի տարբերություն Բաստիլի մյուս բանտարկյալների, որոնք զբոսանքի էին դուրս բերվում օրը մեկ անգամ, հանելուկային կալանավորը կարող էր օրվա ցանկացած պահին դուրս գալ բանտի բակը՝ զբոսնելու. իհարկե, համապատասխան պահակախմբով և միայն այն բանից հետո, երբ բակում ոչ ոք չէր լինում: Հայտնի է, վերջապես, ևս մի դեպք: Կալանավորին հանդիպելու և նրա հետ խոսելու ցանկություն հայտնեց պետականկառավարական բարձրաստիճան գործիչ, Ֆրանսիայի ներքին գործերի մինիստրության առաջին խորհրդական լորդ Բուլտրուեն: Եվ ֆրանսիական պետության մասշտաբով անգամ նշանավոր այս պաշտոնյան, լորդը, կալանավորի հետ խոսում էր ոտքի վրա կանգնած:

Խորհրդավոր կալանավորը մահացավ 1703 թ. նոյեմբերի 19-ին, Բաստիլում և թաղվեց Բաստիլից քիչ հեռու գտնվող Ս. Պետրոս եկեղեցու գավիթում:

Սեն-Մարսի հրամանով և նրա անձնական հսկողությամբ, Բաստիլի այն բանտախուցը, որտեղ բանտարկված էր եղել կալանավորը, վերակառուցվեց գրեթե

հիմնիվեր: Բաստիլի հատակի տախտակները մեկ առ մեկ հանվեցին ու փոխարինվեցին նորերով, պատերը քերվեցին, ապա վերաներկվեցին, եղած անշուք կահկարասին դուրս բերվեց բերդի բակը և այրվեց: Այսպես ավարտվեց նրա կյանքի տխուր պատմությունը...

Առաջին անգամ հանելուկային կալանավորի մասին գրեց Վոլտերը: Ինչպես հայտնի է, ֆրանսիական ժողովրդի այս հռչակավոր զավակը իր սայրասուր պամֆլետների, պետության ու հոգևորականության նկատմամբ ծավալած անողոք քննադատության պատճառով Բաստիլ էր ընկել երկու անգամ՝ 1717 և 1726 թվականներին: Որտեղի՞ց էր նրան հայտնի եղել դիմակավոր կալանավորի մասին, ավելի կամ պակաս կարևոր ուրիշ ի՞նչ տեղեկություններ էր ունեցել նա իր ձեռքի տակ, որոշակիորեն չգիտենք: 1751 թ. Վոլտերը հրատարակեց իր հերթական «Լյուդովիկոս XIV-ի դարը» աշխատությունը, որտեղ էլ որոշ տեղեկություններ հաղորդեց այս կալանավորի մասին և ի դեպ, ինքն էլ նրան տվեց այդ ժամանակից մինչև մեր օրերը, աշխարհի բոլոր գիտնականներին տանջող միևնույն հարցը. ո՞վ էր «Երկաթե դիմակը»: Այս առիթով գրված զանազան մենագրությունների, լրագրային հոդվածների, այլևայլ ամսագրերում տպագրված ուսումնասիրությունների թիվը արդեն մոտենում է հինգ հարյուրի, գործին միջամտել են պատմաբաններ, հրապարակախոսներ, ճանաչված իրավաբաններ, ժուռնալիստներ, գրողներ և անգամ... բժիշկներ ու վարսավիրներ: Ժամանակին տարածվեց և ինչ-որ չափով ընդհանրացավ այն կարծիքը, որ «Երկաթե դիմակը» Ֆրանսիայի թագավոր Լյուդովիկոս XIV-ի խորթ եղբայրն էր, և քանի որ նա էլ էր ձգտում թագավոր դառնալ և այդ նպատակով մեծ թվով կողմնակիցներ էր հավաքագրել, ապա թագավորի կողմից դատապարտվել էր հիշյալ անմարդկային պատժին: Այս հիմքի վրա էլ հենց գրված է Ալեքսանդր Դյումայի՝ վերևում հիշատակված «Երկաթե դիմակ» վեպը և նկարահանված է կինոֆիլմը: Սակայն գիտնականների պրպտումները աստիճանաբար մի կարևոր բան պարզեցին. թագավոր Լյուդովիկոս XIV-ը ո՛չ խորթ, ո՛չ էլ հարազատ եղբայր չի ունեցել: Ուրեմն ո՞վ էր «Երկաթե դիմակը»: Ինչո՞ւ էր նրա համար այդպիսի տարօրինակ պատիժ որոշվել: Ինչո՞վ բացատրել նրա նկատմամբ կիրառվող դաժան խստությունները և զարմանալի հոգատարությունը, այս և այս բնույթի բազմաթիվ գայթակղիչ հարցերը, ավելի կամ պակաս հավանական ենթադրություններից բացի, ուրիշ պատասխան չունեն:

Ծարադրված այս ամբողջ պատմությունն, իհարկե, հետաքրքիր է և զարմանալի քեզ համար: Բայց դու ավելի կզարմանաս, եթե ասեմ, որ «Երկաթե դիմակի» տակ թաքնված թեկնածուների թվում, երկար ժամանակ հիշատակվում էր նաև... մի հայազգի: Դա նշանավոր Ավետիք Եվդոկիացին էր, որը ծնվել էր 1657 թ. և իր ծննդավայրում նախնական կրթություն ստանալուց հետո կարողացել էր այնպես լավ դրսևորել իրեն որպես ազգային գործիչ, որ 1702 թվականին նշանակվել էր Պոլսի հայկական համայնքի առաջնորդ: Սակայն հօգուտ իր ժողովրդի նրա ծավալած եռանդուն գործունեությունը ամենևին դուր չեկավ Պոլսի ֆրանսիական կառավարության դեսպան Ֆերիոլին, որի ջանքերով էլ Ավետիք Եվդոկիացին 1706 թվականին հանելուկային ձևով անհայտացավ Պոլսից և երկարատև թափառումներից հետո, 1709 թ. դեկտեմբերի 18-ին, որպես բանտարկյալ վերջնականապես հայտնվեց Բաստիլում:

Այսքանն էր մոտավորապես այն ամենը, ինչ հայտնի էր Ավետիք Եվդոկիացու մասին, սակայն հայ պատմաբանների և մանավանդ Միքայել Չամչյանի և Լեոյի պրպտումները նորանոր ու կարևոր փաստեր բացահայտեցին: Այսօր արդեն ապացուցված է, որ Ավետիք Եվդոկիացին մոտ չորս տարի Բաստիլում տառապելուց հետո, ազատ է արձակվել, բնակվել է Փարիզում և մի որոշ ժամանակ էլ նշանակվել է քաղաքի եկեղեցիներից մեկի քահանա: Ազատ ժամերին կատարել է ձեռագրերի արտագրություններ և ֆրանսերենից-հայերեն թարգմանություններ, գրել է գրաբար բանաստեղծություններ, որոնցից մի քանիսը հրատարակվել են ժամանակի պարբերականներում: Վախճանվել է Փարիզում, 1711 թ., համեմատաբար երիտասարդ՝ 54 տարեկան հասակում:

Ավետիք Եվդոկիացու հարցն այսպիսով վերանում է, սակայն «Երկաթե դիմակի» առեղծվածը դեռ մնում է...

ՍՈՒՐԵՆ ԾՏԻԿՅԱՆ





**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# Երվանդ Չորրորդից մինչև Արտաշես Առաջին

Մակեդոնիան գտնվում է Հունաստանի հյուսիսում: Այդտեղից էր, որ մ. թ. ա. 334 թ. այդ երկրի երիտասարդ թագավոր Ալեքսանդր Մակեդոնացին իր հույն-մակեդոնական մեծ զորքով անցնելով Դարդանելը (Հելեսպոնտոսը), մըտավ Փոքր Ասիա և պարսիկների դեմ հաղթանակ հաղթանակի հետևից էր տանում: Նա գրավեց Փոքր Ասիայի մեծ մասը, Եգիպտոսը և վերջնականապես ջախջախեց Պարսից Աքեմենյան կայսրության զորքերը Միջագետքում (Գավգամելա գյուղի մոտ): Ապա գրավեց Բաբելոնը և այն դարձնելով իր մայրաքաղաքը՝ շարունակեց արշավանքը դեպի Արևելք ու հասավ Հնդկաստան:

Նախկին Աքեմենյան կայսրությունն ամբողջությամբ դարձավ Ալեքսանդր Մակեդոնացու կայսրությունը: Ալեքսանդրը մի քանի ուրիշ երկրներ էլ կցեց իր այդ պետությանը, և այն արդեն ավելի մեծ էր, քան Աքեմենյան կայսրությունը:

Ալեքսանդր Մակեդոնացին ձգտում էր միացնել Արևմուտքի և Արևելքի մշակույթները: Արևելքը պարտվել էր, և Արևմուտքի հզոր զորաբանակները հունական մշակույթը բերել էին Արևելք: Բայց այդ մշակույթը հսկա կայսրությունում անաղարտ իշխել չէր կարող և միավորվում էր Արևելքի հինավուրց քաղաքակրթությանը: Հենց դա էլ Ալեքսանդրի նպատակն էր: Որպես այդ միավորման խորհրդանշան՝ Ալեքսանդր Մակեդոնացին ամուսնացավ պարսկուհու հետ: Մակեդոնացին, միաժամանակ, նոր քաղաքներ էր հիմնում, որոնց մի մասն իր անունով կոչում էր Ալեքսանդրիա:

Այդպես ասպարեզ եկավ **հելլենիստական** կոչվող դարաշրջանն ու մշակույթը: **Հելլեն** նշանակում է հույն, հելլենիստական՝ հունական: Բայց Փոքր Ասիայից մինչև Հնդկաստան ընկած տարածքում Ալեքսանդր Մակեդոնացու նվաճումների շնորհիվ ձևավորված նոր քաղաքակրթությունն ու մշակույթը ընդունված է անվանել ոչ թե հունական, այլ՝ հատկապես **հելլենիստական** բառով: Այդպես կոչվեց հունական ազդեցությամբ Արևելքում ձևավորված նոր մշակույթը:

Ալեքսանդր Մակեդոնացին անցավ Մեծ Հայքից հարավ գտնվող ճանապարհներով և Հայաստան չմտավ: Նա ձևի համար Հայք ուղարկեց հունական մեկ-երկու փոքր ջոկատ, որոնք ռազմական արժեք չունեին: Բայց հելլենիստական մշակույթը թափանցեց նաև Հայաստան: Ամբողջ հարավ-արևմտյան Ասիայում իրանական մշակութային իշխանությունը փոխարինվեց հելլենիստականով: Արևելքի ճարտարապետությունը, քանդակը, նըկարչությունը, զարդարվեստը հունական արվեստի կնիքն էին ընդունում: Ամենխնջույքի տեսարանի քանդակներ արծաթյա պտյակի վրա (Երվանդունիների ժամանակաշրջան):



նուրեք տարածվում էր հունարեն լեզուն: Այդ ժամանակաշրջանում տարբեր ժողովուրդների դրամների վրա հունարեն էին գրում, հունական և հունաձև անուններ էին տրվում մարդկանց ու քաղաքներին:

Ասիայի մի հսկայական տարածքի վրա ավելի քան երեք հարյուր տարի տևեց հելլենիստական դարաշրջանը. մինչև առաջին դարը:

Մ. թ. ա. 323 թ. Ալեքսանդր Մակեդոնացին վախճանվեց Բաբելոնում: Նրա դիակը մեղրի մեջ տեղափոխեցին Մակեդոնիա: Ալեքսանդրի ստեղծած լայնարձակ պետությունը բաժանվեց նրա մի քանի զորավարների միջև: Ստեղծվեցին առանձին հելլենիստական պետություններ: Զորավար Սելևկոս Նիկատորին ամենամեծ բաժինն ընկավ: Նա մ. թ. ա. 312 թ. դարձավ Ալեքսանդրի կայսրության գրեթե ամբողջ ասիական մասի թագավորը: Այդպես հարավ-արևմտյան Ասիայում սկիզբ առավ Սելևկյանների թագավորությունը, որը տևեց մինչև մ. թ. ա. 83 թ.: Եգիպտոսը բաժին ընկավ Պտղոմեոս զորավարին, և այդ երկրում սկիզբ առավ Պտղոմեոսյան թագավորական տունը: Բուն Մակեդոնիայում և Հունաստանում իշխանությունն անցավ Անտիգոնեսյաններին:

Սելևկյանների պետության մայրաքաղաքն Անտիոքն էր, որը գտնվում էր Ասորիքում (Սիրիայում): Սելևկյանները մի շարք քաղաքներ հիմնադրեցին, որոնց մի մասը կոչվում էր հենց Սելևկիա: Նրանք իրենց պետության մեջ միավորեցին Հնդկաստանից մինչև Փոքր Ասիայի խորքերն ընկած երկրները, այդ թվում՝ Մարաստանը, Պարսկաստանը, Միջին Ասիան, Միջագետքը: Նրանք իրենց պետությունը տարածեցին նաև Փոքր Հայքի վրա և ձգտում էին նվաճել Մեծ Հայքը: Բայց ապարդյուն: Սելևկյաններն իրենց պետական գոյության մոտ 230 տարվա ընթացքում չկարողացան նվաճել կամ իրենց ազդեցության տակ գցել Մեծ Հայքը: Հայաստանը մնում էր անկախ թագավորություն և միշտ հակառակորդ Սելևկյաններին: Ավելին, հայերն օգնում էին հարևան ժողովուրդներին՝ դուրս գալու Սելևկյանների իշխանության տակից: Այդպես, Հայքը զորք ուղարկեց Կապադովկիա, որը գտնվում էր Փոքր Հայքից արևմուտք, և այդ երկրից դուրս քշեց Սելևկյանների զորքերը:

Մեծ Հայքում շարունակում էին իշխել



Անահիտ աստվածուհու գլուխը

Երվանդունիները. ընդ որում, թագավորները հաճախ կրում էին Երվանդ անունը: Վերջին Երվանդ թագավորը, հավանաբար, Երվանդ IV-ն էր: Նա Արաքս և Ախուրյան գետերի միացման վայրում կառուցեց նոր քաղաք՝ Երվանդաշատ, որ դարձավ երկրի երկրորդ մայրաքաղաքը: Արա-մայրը (Արմավիր) շարունակում էր մնալ մայրաքաղաք, նաև որպես կրոնական կենտրոն: Այստեղ էր գտնվում հայտնի գուշակ-պատգամախոսը: Իսկ Երվանդի եղբայր Երվազը հայոց քրմապետն էր: Երվանդը Ախուրյան գետի ափին կառուցեց նաև մի նոր կրոնական կենտրոն՝ Բագարանը:

Երվանդ IV-ի օրոք Հայաստանում առհասարակ նոր քաղաքներ էին հիմնվում, որոնցից մի քանիսը իր՝ Երվանդ թագավորի անունով էին կոչվում, դրանցից էր նաև՝ Երվանդակերտը:

Երվանդունիների պետությունը հելլենիստական էր. գործերը վարում էին հունարեն, մեծամեծերը հունական զգեստներ էին հագնում, Հայքում ուսուցումը հունարեն էր, Հայաստան էին մուտք գործել հունական աստվածները՝ Ապոլլոնը, Արտեմիսը և ուրիշներ:

Արմավիրում գտնվել են այն ժամանակներում գրված հունարեն արձանագրություններ, որոնք ցույց են տալիս հելլենիստական մշակույթի մեծ դերը Հայքում:

Երվանդունիները ջանում էին պահպանել Մեծ Հայքի այն սահմանները, որ որոշել էր Արա (Արգիշտի) Առաջին մեծ թագավորը: Բայց դա բավական դժվար էր: Դեռևս Մարաստանի հզորության ժամանակ Հայքից խլված արևելյան հողերը մնում էին Երվանդունիների պետությու-

նից դուրս: Հարավային Կորճայք աշխարհի մի մասը՝ Ծոփքը, Կորդուքը գրավել էին Սելևկյանները: Ծոփքը, որը դեռ Արարատյան թագավորության ժամանակ հաճախ էր փորձում անջատվել Մեծ Հայքի պետությունից, մ. թ. ա. 3-րդ դարում անջատվել և առանձին թագավորություն էր դարձել:

Ծոփքում նույնպես Երվանդունիներ էին իշխում: Մ. թ. ա. 3-րդ դարի կեսերին նրանք Ծոփքից հարավ գտնվող Կումմախա երկիրը, որը հելլենիստական շրջանում կոչվում էր Կոմմագենե, միացրին Ծոփքին և ստեղծեցին հայկական ուժեղ մի պետություն: Այն լավ հարաբերություններ էր պահպանում Մեծ Հայքի թագավորության հետ: Ծոփքի թագավորությունն էլ էր դիմադրում Սելևկյանների նվաճողական փորձերին: Այստեղի թագավորներից էր Սամ (Շամ) Երվանդունին, որը մ. թ. ա. 245 թ. հին Կումմախայում իր անունով հիմնեց Սամոսատ քաղաքը և դարձրեց պետության մայրաքաղաք: Սամին հաջորդեց նրա որդին՝ Արշամը, որն իր հերթին բուն Ծոփքում կառուցեց նոր մայրաքաղաք՝ Արշամաշատը:

Մ. թ. ա. 223 թ. Սելևկյանների պետության թագավոր դարձավ Անտիոքոս *III* Մեծը: Նա արշավեց Ծոփքի հայկական թագավորության վրա, շրջապատեց Արշամաշատը, բայց գրավել չկարողացավ: Նա կեղծ բարեկամություն հաստատեց հայերի հետ, իր քույր Անտիոքեսին ամուսնացնելով Ծոփքի հայոց թագավոր Քսերքսեսի հետ:

Անտիոքոս *III*-ը հզորացրեց Սելևկյանների պետությունը. նա արշավեց մինչև Հնդկաստան, Միջին Ասիայում հաղթեց հզորացող Պարթևներին: Մ. թ. ա. 201 թ. Անտիոքոսը իր քրոջ միջոցով սպանել տվեց իր փեսային՝ Ծոփքի հայոց թագավորին, և Մեծ Հայքի այդ աշխարհը որպես սատրապություն միացրեց իր պետությանը: Նրանից անջատեց Կոմմագենեն և դարձրեց առանձին սատրապություն: Ապա՝ Անտիոքոսը ջանում է իրեն ենթարկել նաև Մեծ Հայքը: Դա նրան կարծես ինչ-որ չափով սկսում էր հաջողվել: Նա Մեծ Հայքում կառավարիչ (հունարեն՝ ստրատեգ) նշանակեց մի հայ ազնվական զորավարի՝ Արտաշես անունով, որը նույնպես ծագում էր Երվանդունիներից: Բայց Մեծ Հայքում դեռ թագավորում էր Երվանդ IV-ը: Արտաշեսն իր օգնական Սմբատ Բագրատունու օժանդակությամբ հարձակվեց Երվանդի զորքերի վրա:

Ինչպես որ Արարատի թագավորության ժամանակ Արամի հայոց թագավորական տնից դժգոհ Պարույրը մարերի հետ դաշնակցեց և խլեց հայոց գահը, այդպես էլ այժմ հայոց ազնվական-զորավար Արտաշեսը Սելևկյանների հետ դաշնակցելով, Երվանդունիներից խլեց հայոց գահը:

Արտաշեսի զորավար Սմբատը գրավեց Երվանդաշատը, և նրա զինվորներից մեկը սպանեց Երվանդ IV թագավորին: Մեծ Հայքի ամբողջ իշխանությունն անցավ Արտաշեսին: Սա ձևացնում էր, թե ենթակա է Անտիոքոս *III* Սելևկյանին: Բայց դա տևեց մի երկու տարի միայն:

Անտիոքոսը Ծոփքում կառավարիչ կարգեց մի այլ հայ զորավարի՝ Զարեհին: Այս ամենը Անտիոքոս *III*-ն անում էր մի մեծ նպատակով. նա ուզում էր գրավել Մակեդոնիան, Հունաստանը, հետո նաև Հռոմը և դրա համար ամրապնդում էր իր թիկունքը:

Մ. թ. ա. 192 թ. Անտիոքոսն իր զորքով մտավ Հունաստան և նա այդ երկիրն արդեն գրավված էր համարում, երբ հանդիպեց հռոմեական բանակներին: Հռոմեացիները ծովում ու ցամաքում հաղթեցին սելևկյան զորքերին, և սրանք նահանջեցին դեպի Փոքր Ասիա: Հռոմեացիները հետապնդեցին Անտիոքոսին, և իրենք էլ անցնելով Դարդանելը, մտան Փոքր Ասիա: Այդպես, ուժեղացող Հռոմը առաջին անգամ ոտք դրեց ասիական մայր ցամաք: Նոր, հզոր պետություն էր ասպարեզ գալիս: Մի պետություն, որ այս անգամ էլ ինքն էր դառնալու աշխարհում ամենազորեղը:

Մ. թ. ա. 190 թվականին Փոքր Ասիայի Մագնեսիա քաղաքի մոտ մեծ ճակատամարտ տեղի ունեցավ Հռոմի և Անտիոքոսի սելևկյան զորքերի միջև: Հռոմեացիները ջախջախեցին Սելևկյանների զորքերին: Փոքր Ասիայի մեծ մասն անցավ հռոմեացիներին:

Սելևկյանների այս պարտությունը ձեռնտու էր Հայաստանին: Անտիոքոսը, որ գրավել էր Փոքր Հայքը, Ծոփքը և Մեծ Հայքի որոշ շրջաններ, ստիպված եղավ հանգիստ թողնել Հայաստանը: Հայքում արդեն թագավոր էր Արտաշես Առաջինը, Ծոփքում՝ Զարեհը:

(շարունակելի)

ՌՈԲԵՐՏ ՖԱՐՐԻՍ ԹՈՄՓՍՈՆ
(ամերիկացի պատմաբան)




«Նրբասահ քայլք, կրկնակի քայլք, սահաքայլ և պտույտ. պարողը ճտտացնում է մատներով, ծնկները դուրս գցած՝ անբնական շարժում ոտքերը, պտտվում թաթերի ու կրունկների վրա. նրա համար բացի դափ ու թմբուկ խփող երաժշտի մատներից, կարծես ուրիշ ոչինչ գոյություն չունի. նա պարում է և ասես ունի երկու աջ, երկու ձախ, երկու փայտե և երկու մետաղալարե, երկու զսպանակե ոտքեր, զանազան ոտքեր ու ոչ մի ոտք, և շուրջը ոչինչ կարևոր չէ նրա համար»:

Սա մի հատված է Չարլզ Դիկկենսի «Ամերիկյան նոթեր»-ից: 1842 թ. գրողն այցելեց Նյու Յորք, և Մանհեթենի ակումբներից մեկում նրա ուշադրությունը գրավեց մի սևամորթ, որի պարը տնօրենն անվանեց «ամենաասովորական բրեյք դանսն»:

1698 թվականին Կոնգոյում ֆրանսիացի միսիոները նկարագրում է տեղի բնիկների պարը, ուր նրանք կրկնօրինակում էին թռչունների շարժումը: «Պարում էին կիսապպզած, ծնկները դուրս ցցած, ափերը՝ ազդրերին ու կրծքին շրխպացնելով, մատները ճտտացնելով, պարին հաղորդելով լրացուցիչ ռիթմ»:

Երեք դար անց՝ 1969 թվական. Նյու Յորքի «Մեդիսոն-Սքվեր-Գարդըն»-ի բեմում է սոուլ երաժշտության «արքան»՝ Ջեյմս Բրաունը: Լրագրողն արձանագրել է նրա կատարումը, որը զարմանալիորեն համապատասխանում է Դիկկենսի ու միսիոների նկարագրությանը. սահուն քայլք, առաջ ծալված ծնկներ:

Անցյալ դարի վերջին նկարահանվեց «Երեք պար» կարճ կինոսյուժեն. մի սևամորթ շրթհարմոն է նվագում, մյուսը թըխթըխկացնում ռիթմը, իսկ երրորդը կատարում է ժամանակակից ամենաասովորական բրեյք դանսի շարժումներ, որոնց նշանակությունը հատուկ տերմիններով կարող էին բացատրել միայն Կոնգոյի ժողովուրդները: Դուք, հավանաբար, տեսել եք այսպիսի շարժում՝ պարողներից մեկը սկսում է ետ-ետ ընկնել, մյուսը՝ վերջին պահին հասցնում է բռնել նրան: Կոնգոյում սա նշանակում է՝ «տերև, որը երբեք ցած չի ընկնում»: Առհասարակ բրեյք-դանսում տարրերի կառուցվածքային հաջորդականությունը՝ ցատկ, քայլք, վայր ընկնել-համարյա կոնգոլեզյան «նսունս» ծիսական պարի կրկնօրինակությունն է:

Այն պարը, որն այժմ անվանում են բրեյք-դանս (հաճախ էլ հիպհոպ) ծնվել է Նյու Յորքի Բրոնքս շրջանում և իր վերջնական ձևն ու տեսքը ստացել է 70-ական թվականների վերջերին: Ինչո՞ւ հատկապես Բրոնքսում: Որովհետև այդ շրջանում են ապրում տարբեր երկրներից եկած գաղթականները, որոնք իրենց հետ բերեցին իրենց մշակույթն ու լցրին համընդհանուր «հալոցային կաթսան», որտեղից էլ դուրս եկավ ահա այս պարը՝ աֆրիկյան կուլտուրայի խորը ազդեցությամբ: Նախ՝ երաժշտությունը ամերիկյան նեգրերինն է՝ ջազ, սոուլ, ֆանկ, որոնց տարրերը յամայկական ռեգգեյ երաժշտությանն են պատկանում, առկա է նաև կուբայական երաժշտական կուլտուրան՝ վաղ շրջանի բրեյք պարողների կարևորագույն գործիքներից մեկը կուբա-



յական կոնգերն են: Պուերտո Ռիկոյի գաղթականները բերել են իրենց ազգային «բոմբա» պարի տարրերը և դրանք զուգակցելով ցատկ, քայլ, վայր ընկնել տարրերի հետ, ստեղծել և մշակել են պարային պտույտների տարբեր տեսակներ, որոնք տեղի բնակիչները անվանում են «ջրաղացներ»:

Ինչո՞ւ ենք անընդհատ խոսում Կոնգոյի մշակութային ազդեցությունների մասին:

Պատմաբանների վկայությամբ XVI դարի սկզբին և XIX դարի վերջին քառորդին Նոր Երկիր բշված մոտ 10 միլիոն աֆրիկացի գերիների 40 տոկոսը Կոնգոյից ու հարևան Անգոլայից էին: Այդ փաստը վճռական ազդեցություն ունեցավ նորանձև երաժշտության զարգացման վրա ողջ աշխարհում: Աֆրիկյան ազդեցությամբ ու այլ մշակույթների համակցությամբ Նոր Օռլեանում ստեղծվեց ջազը, Կուբայում՝ ռումբան, իսկ Բրազիլիայում՝ սամբան: Նոր Օռլեանում կոնգոցիների թիվն այնքան մեծ էր, և նրանց պարողներն էլ այնպիսի ժողովրդականություն էին վայելում, որ հրապարակը, ուր հավաքվում էին երաժշտություն լսելու և դիտելու ստրուկների պարը, այդպես էլ կոչվեց՝ Կոնգոյի հրապարակ:

Պարերը Կոնգոյի հրապարակում հետաքրքիր էին նախ և առաջ նրանով, որ պարում էին այնքան, որքան ցանկանում էին, իսկ երաժիշտները նվագում էին հանպատրաստից: Մեր օրերում, սակայն, դիսկոտեկներում պարում են ձայնապընակների օգնությամբ, որոնց տևողության ժամանակը սահմանափակ է: 1981 թ. երբ հրատարակվեց առաջին հոդվածը բրեյք-դանսի մասին, այս պարը արդեն վերջնականապես ձևավորվել էր, պարզվել էին շարժումների փուլերն ու հաջորդականությունը. պարողի երևալը (սայթաքուն քայլեր), բրեյք պարողը կտրուկ ընկնում է գետնին՝ հենվելով ձեռքերի վրա, պտույտ (մեջքի, գլխի, ուսերի, ձեռքերի վրա), «սառչելը» և վերջապես, ավարտը՝ պարողը կրկին ընդունում է ուղղահայաց դիրք:

Ի դեպ, այս ամենը նույնպես վերցված են աֆրիկյան պարերից: Կոնգո գետի վրա ընկած խուլ գյուղակներից մեկում մի խումբ երեխաների հրճվագին աղաղակների տակ, մի տղա, ձեռքին հենված, պտտվում էր գետնին և հանկարծ միանգամից քարանում արձանի պես: Անցյալ դարի կուբայական մի փորագրություն պատկերում է սևամորթ պարողին՝ տոնախմբության ժամանակ: Նրա կեցվածքը ժամանակակից բրեյք-դանս պարողներին նվիրված ֆիլմի կադրն է հիշեցնում:

Իհարկե, աներևակայելի ակրոբատիկ համարներով լի այսօրվա կատարումները չի կարելի համեմատել Կոնգոյի հնագույն պարերի հետ. անցել են դարեր, այդ պարերի վրա աշխատել են նորանոր շատ վիրտուոզներ: Այնուամենայնիվ, ուզում ես նորիցնոր վերընթերցել Դիկկենսի «Ամերիկյան նոթերը» և պատկերացնել «ամենասովորական բրեյք դաուն» կատարող սևամորթին:

Թարգմանեց՝ Ծ. ՂԱԶԱՐՅԱՆԸ






Այն ամենը, ինչ ուներ դոն Դիեգոն, իր խոնջացած ձեռքերն էին, որ վարժվել էին հին ջրաղացի ալյուրով լցված ծանր պարկերին: Նա աշխատել էր այնքան, ինչքան ինքն էր իրեն հիշում: Ու մի խարխուլ տնակ՝ դեպի աղտոտ փողոց նայող պատուհաններով, Բուենոս-Այրեսի արևմտյան ծայրամասի Ֆիֆիտո թաղամասում: Էլ ի՞նչ խաղալիք, եթե ուտելիքն անգամ հազվադեպ էր լինում ընթրիքի սեղանին:

Երբ հորեղբայրը երեքամյա Դիեգոյի ծննդյան օրը իսկական կաշվե գնդակ բերեց, բոլորից շատ գոհ էր Մարադոնայի հայրը, որ ֆուտբոլի կրակոտ երկրպագու էր: Նա էլ դարձավ իր որդու և նրա ընկերների առաջին մարզիչը: Մարզումների մշտական վայրն էր թաղամասի ետնաբակերում ընկած ամայի ու լքված տարածքը: Հենց այդտեղ էլ ծնվեց «Կարմիր աստղ» բարձրագոչ անունը կրող նրանց թիմը: «Կարմիր աստղի» տղաների հետ ում էլ վիճակվեր մրցել այդ հողե խաղադաշտում, որպես կանոն, հեռանում էր պարտված:

Ծերունի Մարադոնային կարիքն այժմ ամեն առավոտ չի քշում հին ջրաղաց: Եվ չկա անհրաժեշտություն երեկոները գնալ բար և այս ու այն կողմ քարշ տալ սառույցով ու գարեջրի շշերով լի արկղերը, որպեսզի տնեցիներից մեկի համար մի զույգ կոշիկի փող վաստակի:

Դիեգոն ծնողների համար տուն է գնել, փոքր եղբայրն էլ՝ Ուգոն, ամբողջ օրն անբաժան է գնդակից: Միայն բարեկարգ տան պատին գնդակի անվերջ հարվածներն են հիշեցնում անցած-գնացած օրերի մասին:

Դոն Դիեգոն պատմում է, թե ինչպես տասնչորսամյա Դիեգիտոն մի օր տուն եկավ իրենից «Արգենտինոս Խունիորս» ակումբի հետ պայմանագիր կնքելու համար թույլտվություն խնդրելու:

— Խելագարություն է,— ոչ առանց հպարտության դժգոհում էր Դիեգոյի մայրը՝ Դոննա Դոլման, երբ արդեն Մարադոնան պայմանագիր էր կնքել «Նեապոլի» հետ,— նա ամեն երեկո զանգում է Նեապոլից ու բոլորիս հետ առանձին-առանձին երկար-բարակ զրուցում. ինձ հետ, հոր ու եղբայրների, նույնիսկ՝ ամենափոքր քրոջ:

«Մոնումենտալ» գլխավոր մարզադաշտի տրիբունաներից լսվող թմբուկների, ճչանակների, չխկչխկանների ու ծափահարությունների աղմուկի տակ Մարադոնան 1977 թվի մարտի 15-ին առաջին անգամ խաղում էր Արգենտինայի հավաքականի կազմում: Հունգարներն անհուսորեն պարտվում էին՝ 1:5: Շատ բղավելուց խռպոտած ու գոհ հանդիսականները, թվում է, երկրորդ շնչառություն էին ստացել, երբ կանաչ գազոնի եզրագծում նկատել էին պատանի ֆուտբոլիստին: Ոչ, նա գոլ չէր խփել, մի քանի անգամ Դիեգոն շրջանցել էր հակառակորդի կենտրոնական պաշտպաններին: Եվ դա արել էր ճիշտ աֆրիկական պարի աննկատ ու արագ, գոտկատեղի շրջանաձև վիրտուոզ շարժումով: Այդ հնարքը պատկանում էր նրա հայրենակիցներ Ռոխասին ու Խոուսեմանին, իսկ ինքը՝ Մարադոնան, դրա վրա շատ երկար էր աշխատել:

Իսպանիայում կայացած ֆուտբոլի աշխարհի առաջնությանը Արգենտինայի թիմը ներկայացավ Սեսար Մենոտտիի գլխավորությամբ: Մարզիչը մամուլում հայտարարեց, որ չեմպիոնատը Դիեգոյի համար կլինի այն, ինչ Պելեի համար Մեխիկոն 1970 թվականին:

«Նույնիսկ եթե ինձ կոչեին Իսպանիայի չեմպիոնատի ամենավատ խաղացողը, միևնույն է, ես դարձյալ կպահպանեի այն թերթը, որի մեջ իմ մարզիչը նման կարծիք էր հայտնել,— ասում է Մարադոնան:— Երբևէ երեխաներիս ցույց տալու համար: Չէ որ դրանք այն մարզիչի խոսքե՞րն էին, որի գլխավորությամբ արգենտինացիներս առաջին անգամ նվաճեցինք աշխարհի չեմպիոնի կոչումը: Նա ինձ հոր պես էր վերաբերվում, դա անհնար է մոռանալ»:

Մենոտտին հետո ասել էր. «Գուցե ես շտապեցի նման հայտարարություն անելով, բայց ոչ մի վայրկյան չեմ կասկածում, որ Մարադոնան կունենա աշխարհի ի՛ր առաջնությունը: Դիեգոյին կհիշեն: Մինչև այժմ համաշխարհային ֆուտբոլի պատմությանը չորս անվիճելի անուն է հայտնի. Դի Ստեֆանո, Պելե, Յաշին, Կրուիֆ: Այս «թանգարանի» թեկնածուներ դարձան Պլատինին ու Մարադոնան»:

Իսկ ամերիկյան ժուռնալիստ Քլիվ Թեմմոնը գրեց. «Նա մեծ ֆուտբոլիստ է, ես կարծում եմ, նա արդեն հավասարվել է Պելեին: Բայց Մարադոնան նախևառաջ իր երկրի քաղաքացին է, հետո նոր՝ ֆուտբոլիստ: Դիեգոն խելացի ու նրբանկատ անձնավորություն է»:

Ամերիկյան ժուռնալիստը հիմքեր ուներ այդպես արտահայտվելու:

1982 թվականի գարնանը Մադրիդում կայացավ Մարադոնայի և հանրահռչակ երգիչ Էդուարդ Գրանտի ծանոթությունը: Գրանտը իր հայրենի Գրենադայից Իսպանիա էր՝ եկել չեմպիոնատի կուլտուրական ծրագրին մասնակցելու հրավերով: Նրանք բարեկամացան: Առաջնության ավարտից հետո Գրանտը Մարադոնային հրավիրեց Գրենադա: Մի օր առավոտյան Գրանտը գնացել էր ստուդիա, խոստանալով վերադառնալ երեկոյան, իսկ Դիեգոն մնացել էր հյուրանոցում, որտեղ էլ նրան գտավ արգենտինացի խոշոր արդյունաբերող Կավալդեսը:

— Լսիր, Դիեգո,— շշնջաց նա Մարադոնայի ականջին,— անհապաղ պետք է մեկնես, անհապա՛ղ:

— Իսկ ի՞նչ է պատահել:

— Որոշակի ոչինչ ասել չեմ կարող: Եթե մնաս, կփտանգես կյանքդ: Ամերիկացի բարեկամները հաղորդեցին, որ այստեղ՝ Գրենադայում, ինչ-որ բան է



պատրաստվում...

Մարադոնան հասկացավ: Հեղաշրջում: Խոսակցության ընթացքում Կավալդեսը համոզվել էր, որ Մարադոնան ակնհայտորեն մի որևէ սև ցուցակում կլինի՝ Լատինական Ամերիկայում ԱՄՆ-ի վարած անարդար քաղաքականության մասին արգենտինական մամուլում կատարած հաճախակի հայտարարությունների պատճառով: «Լսիր,— համոզում էր Կավալդեսը,— իմ ինքնաթիռը, փառք աստծո, կարող է օդ բարձրացնել երկու հոգու»: Բայց Դիեգոն անհողդողդ էր. «Կա՛մ ես թռչում եմ քո և Գրանտի հետ, կա՛մ դու և Գրանտն եք թռչում, իսկ ես մնում եմ. մի՞թե չես հասկանում, թե ինչ է սպառնում նրան»:

Գրանտը հակապատերազմական, հակառասիստական երգեր էր գրում, և Ամերիկայում էլ, իհարկե, հիշում էին նրա հայտարարությունը. «Խեղճ ու դժբախտ է այդ Ամերիկան: Նրա շունչը կտրվում է դոլլարային հեղձուկում: Իհարկե, իմ երգերը ոչինչ էլ չեն փոխի, ես ուղղակի ուզում եմ, որ մարդիկ իմանան. կա ու-

րիշ, իսկական ճշմարտություն»։

Եվ Կավալդեսի երկտեղանոց ինքնաթիռը Գրենադայի հողից կտրվեց ու երկինք բարձրացրեց երեք հոգու։ Հետո միայն պետք է ամերիկացի ժուռնալիստ Քլիվ Թեմմոնը գրեր. «Ես գիտեի, որ որևէ զոհ-երկիր ներխուժելուց առաջ «երրորդ ռեյխի» մասնագետները նախօրոք էին պատրաստում այն մարդկանց ցուցակը, ովքեր ենթակա էին ոչնչացման առաջին հերթին։ Ես գիտեի դա։ Բայց մտքովս չէր անցնում, որ մեր կառավարությունը կապկում է այն ոճն ու մեթոդները, որ կիրառվել են ֆաշիստական Գերմանիայում։ Նման մի ցուցակ իմ գրասեղանի վրա է՝ ոչ առանց Մարադոնայի օգնության։ Դա Գրենադայում Ամերիկայի անձնական թշնամիների ցուցակն է։ Այն բացում է Մորիս Բիշոպը՝ «պրեմիեր մինիստր, թշնամի № 1»։ Նրա ճակատագիրը ձեզ հայտնի է։ 12-րդ համարի տակ նշված է. Էդուարդ Մարիա Ֆերնանդես Անտոնիո Լյուդվիգ Գրանտ, երգիչ...»։ Եվ Կավալդեսի ինքնաթիռը օդ բարձրացավ երեք հոգով։ Եթե չլիներ այդ փոքրիկ ինքնաթիռը, երբեք չէին իրականանա Դիեգոյի մարզիչ Մենոտտիի խոսքերը, թե Մարադոնան կունենա աշխարհի իր առաջնությունը։ Իրոք, Մեխիկո—86-ը դարձավ Մարադոնայի չեմպիոնատը։

Իսկ մինչ այդ...

— Դիեգո, դու պետք է գլուխդ մտցնես, որ սա քո չեմպիոնատն է։ Դու ամենահարմար տարիքում ես, ողջ թիմը քո տրամադրության տակ կլինի, և որպեսզի կասկածներ չառաջանան, թե ով է հրամայում խաղադաշտում, ես քեզ կտամ ավագի թևկապը, իսկ դու քո կյանքից երեսուն օր ինձ պետք է տաս, միայն երեսուն օր, բայց այդ ընթացքում դու պետք է մարզվես մեռնելու աստիճան և չեմպիոնատից բացի ուրիշ ոչ մի բանի մասին չմտածես։ Խոսք տուր։

Սրանք Արգենտինայի հավաքականի մարզիչ Կառլոս Սալվադոր Բիլարդոյի խոսքերն են։ Խոսակցությունը տեղի էր ունենում Նեապոլի սրճարաններից մեկում.

— Չորս տարի առաջ իմ նախորդը՝ Լուիս Սեսար Մենոտտին, քեզ ստիպում էր խաղալ ամենաառջևի գծում, բոլորովին միայնակ։ Սխալ է։ Դու պետք է խաղաս հարձակվողներից փոքր-ինչ ետ...

Բիլարդոն ինչ-որ անախորժություններ ուներ Արգենտինայի ֆուտբոլի ֆեդերացիայի հետ. նրան մեղադրում էին Արգենտինայի ֆուտբոլի ավանդույթներն անտեսելու, «փակ» ֆուտբոլ խաղալու համար, ինչը վնասում է ֆուտբոլիստի երևակայությանը և խաղի դիտարժանությանը։

Արգենտինայի հավաքականը Մեխիկո մեկնեց իր երկրպագուների անտարբեր, եթե ոչ թշնամական վերաբերմունքին արժանացած։ Ըստ հարցումների վիճակագրության՝ արգենտինացիների 80 տոկոսին բոլորովին դուր չէր գալիս Բիլարդոյի թիմը։ Եվ Մարադոնան որոշեց. պետք է շահել Մեխիկոյի չեմպիոնատը։ Ժամանակն է փակել իր ընկերոջ՝ Բիլարդոյի թշնամիների բերանը։

Ոչ-ոքի՝ իտալացիների հետ, հաղթանակ բուլղարացիների նկատմամբ՝ 1:0։ Դժվարին, բայց արժանի հաղթանակ Ուրուգվայի հավաքականի նկատմամբ։ 2:1՝ անգլիացիների հետ։ Առաջին գոլը Մարադոնան խփում է Սիլվիո Պիոլայի ոճով՝ ձեռքով։ «Դա աստծո աջն էր»,— ասել էր նա կատակով, և պարզվում է, որ այն, ինչ տեղի էր ունեցել, ամենևին էլ պատահմունք չէր. «Պարապմունքների ժամանակ ես ցատկում եմ բռունցքս բռունքիս սեղմած. մեկ էլ տեսար՝ մրցավարը չնկատեց, ամեն ինչ հնարավոր է»։ Երկրորդ գոլը ֆուտբոլի պատմության մեջ ամենագեղեցիկներից մեկն էր. չորս հակառակորդի շրջանցել, ինչպես՝ դահուկորդն արգելքները։ Մամուլը նրան նոր Պելե էր հռչակել, իսկ Բիլարդոն՝ ամենաքարոզչական հատկանիշների տեր չեմպիոն. «Նա ոչ մի հանգստյան օր չխնդրեց։ Աշխատում էր ինչպես անիծված, նա օրինակ պետք է լինի երիտասարդ արգենտինացիների համար»։

Կիսաեզրափակիչ. դարձյալ երկու անկրկնելի գոլ բելգիացիների դարպասը։ Չնայած ԳՖՀ-ի հետ ոչ այնքան հաջող խաղին, իրականացավ ֆուտբոլային փորձագետների կանխագուշակությունը. խամրեց Միշել Պլատինիի աստղը, և Մեխիկո—86-ը դարձավ Դիեգո Մարադոնայի չեմպիոնատը։ Եվ երբ ամբոխի ցընծության ներքո Մարադոնան դեպի երկինք պարզեց հաղթողների գավաթը, արգենտինացի հանդիսատեսները բացեցին հետևյալ գրությամբ պաստառը. «Ներիր, Բիլարդո, շնորհակալություն»։




● Բոլորին հայտնի է, որ ճպուռը կարող է կախվել օդում, տեղից շարժվել կողքի վրա կամ կտրուկ ետ շրջվել: Ընդ որում, բոլոր տեղաշարժերը նա կատարում է մեծ արագությամբ: Սակայն քչերը գիտեն, որ ճպուռի վեր տանող ուժը 3 անգամ ավելի է, քան ժամանակակից ինքնաթիռինը:

Այդ բանը վերջերս հաստատեցին Կոլորադոյի համալսարանի (ԱՄՆ) մասնագետները: Օգտագործելով ճպուռի աէրոդինամիկ առանձնահատկությունները, գիտնականները հույս ունեն զգալիորեն բարձրացնել թռչող ապարատների արդյունավետությունն ու անվտանգությունը: Այն ինքնաթիռները, որոնք կարտադրվեն՝ հաշվի առնելով ճպուռի թռիչքային ընդունակությունները, կկարողանան կատարել ավելի կտրուկ շրջադարձեր, նրանց համար նվազ սարսափելի կլինի, քամին, որը դժբախտաբար դեռ վթարների պատճառ է հանդիսանում:

● Մեզ համար արդեն սովորական է այն, որ ապակուց պատրաստում են գործվածքներ, նավի կմախք, մեքենաների և ինքնաթիռների որոշ մասեր: Եվ ահա հերթը ապակե կամուրջներին էլ հասավ: Դրանցից մեկը կփոխարինի խարխլված, փայտե Ակադեմիական կամուրջին, որը կառուցված է Մեծ ջրանցքի վրա՝ Վենետիկում: Նրա երկարությունը կլինի 70 մետր: Պողպատից կպատրաստվեն միայն հենակետային կամարները, իսկ մնացած բոլոր մասերը՝ աստիճանները, բազրիքները, երեսարկումը, մեծ ամրության ապակուց:

Նոր կամուրջը, փորձագետների կարծիքով, կդիմանա դարեր, չէ՞ որ ապակին մետաղի նման չի ժանգոտվում և վնասատու միջատներն էլ սարսափելի չեն, ինչպես փայտի համար:

## «ՊԻՈՆԵՐ» 7-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

**Ուղղահայաց**— 1. Գալայ, 3. Կապար, 4. Ռաբաթ, 6. Կարակաս, 7. Բալայան, 10. Վան: 11. Բախ: 14. Նավակ: 15. Ղափան, 18. Մարաշ:

**Հորիզոնական**— 2. Գայ, 5. Հացավան, 8. Ծավալ, 9. Դակար, 12. Նատալ, 13. Կազան, 16. Վասակ, 17. Սաքահ, 19. Յասաման, 20. Մառ:

Ա) Ժամը 2—3-ը Հակոբիկը կներկի նստարանը, իսկ Սոնան կարդուկի տաբատի կեսը և կմաքրի սենյակի կեսը: Հաջորդ կես ժամում՝ մինչև 3 անց 30 րոպե, Սոնան կավարտի սենյակի մաքրելը, իսկ եղբայրը կվերջացնի արդուկելը: Մնացած կես ժամում նրանք կհասնեն կինոթատրոն:

Բ) Տիգրանը ծնվել է դեկտեմբերի 31-ին:

Գ)



Գլխավոր խմբագիր՝ **ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈԼՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր):

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԳԵՎՈՐԳՅԱՆ Գ.:

